# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 11

ՆՈՅԵՄԲԵՐ

1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ




ՆԿ. Ն. ՕՍԵՆԵՎԻ

*Սովետական կառավարության առաջին խոսքը*

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻՑ ԱՌԱՋ

Մ. ՖՈՖԱՆՈՎԱ (կրճատ) Նկ. Կ. ՌՈՒԽԿՅԱՆԻ

*Հուլիսի 4-ի դեպքերից հետո պարտիայի Վիբորգյան կոմիտեն մտադրվել էր իմ բնակարանն օգտագործել պարտիական նպատակների համար:*

*Այդ բնակարանը գտնվում էր Վիբորգյան կողմում, համարյա հենց Լեսնոյի մոտ (Բ. Սամպսոնիևսկու և Սերդոբոլսկայայի, 92/1, բնակարան 41), տան վերին հարկում. նրա պատուհանները նայում էին դեպի հարևան տան այգին, այնպես, որ մեկուսացման նպատակով բնակարանը շատ հարմար էր:*

*Մոտավորապես օգոստոսին վերջնականորեն որոշված էր, որ բնակարանը ես պետք է տրամադրեի պարտիային և այդ ժամանակամիջոցում ընտանիքս պետք է այլ տեղ ուղարկեի: Այդ մասին ասացի քրոջս, որը երեխաներիս տարավ իմ ծնողների մոտ՝ Ուֆայի նահանգը:*

*Սեպտեմբերի վերջին Վլադիմիր Իլյիչը Ֆինլանդիայից ուղիղ ինձ մոտ եկավ: Հիշում եմ, ուրբաթ օր էր, երեկոյան ժամի յոթ-ութը: Ժամանել էր նա Ուդելնայա կայարանից: Վլադիմիր Իլյիչից հետո եկավ նաև Նադեժդա Կոնստանտինովնան: Իլյիչը անցավ իր համար պատրաստված սենյակը, և միայն առավոտյան թեյի սեղանի շուրջը կայացավ մեր ծանոթությունը: Այդտեղ էր նաև Նադեժդա Կոնստանտինովնան: Վլադիմիր Իլյիչը դուրս եկավ կեղծամն ուղղելով: Հենց առաջին իսկ օրվանից նա ինձ համար խակական Իլյիչ էր: Ինչքան էլ նա սովորեցնում էր, որ ամեն առավոտ իրեն դիմեմ նոր անունով, բան չէր դուրս գալիս: Նրա մոտ այն ժամանակ վկայական կար սեստրորեցկյան բանվորի նկարով, որի անունն էր Կոնստանտին Պետրովիչ Իվանով: Բայց Իլյիչը երբեմն չէր դնում իր կեղծամը, թեպետ պայմանավորվել էինք, որ ես պետք է անպայման հիշեցնեի կեղծամի մասին: Իսկ կեղծամը, իմիջիայլոց, այնպես էր խանգարում Իլյիչին, որ եթե նա ծածկում էլ էր, ապա անընդհատ ուղղում էր կամ հարցնում, թե լա՞վ է արդյոք դրել:*

*Կեղծամի հետ նրա գործերն այնքան անհաջող էին գնում, որ երբ Իլյիչը հոկտեմբերի 24-ին Սմոլնի մեկնեց և 100-րդ սենյակում (կարծեմ ես չեմ սխալվում) սկսեց հանվել, գլխարկի հետ կեղծամն էլ հանեց ու խոթեց վերարկուի գրպանը: Երբ տարբեր կողմերից լսվեցին «Իլյիչը, Իլյիչը» բացականչությունները, այն ժամանակ միայն նա հասկացավ և շոշափեց իր գլուխը, բայց արդեն ուշ էր: Դրանով էլ վերջացավ Լենինի կեղծամի պատմությունը:*

*Սկզբում Իլյիչը բնակարանից դուրս չէր գալիս նույնիսկ զբոսնելու համար: Նա մերժում էր իմ առաջարկությունը՝ երեկոները պատշգամբ դուրս գալու մասին: Պատշգամբում նա եղել էր միայն մի անգամ, այն էլ իր գալստյան երկրորդ օրը: Երբ մենք մնացինք երկուսով, նա խնդրեց ինձ իրեն ցույց տալ ամբողջ բնակարանը, որպեսզի երբ հարկ լինի ոչ թե դռնից, այլ պատուհանից դուրս գալու, կարողանա հեշտությամբ կողմնորոշվել:*

*Սկզբում ես նույնիսկ չհասկացա, թե դրանով Իլյիչն ինչ էր ուզում ասել: Բնակարանը ցույց տվեցի: Երբ եկանք երրորդ սենյակը, ես մոտս պարզեցի դեպի պատշգամբը, Իլյիչը ուրախ ժպտաց և ասաց. «Հրաշալի է, այժմ կարելի է ճիշտ որոշել, թե ինչպես է գնում ջրհորդանը, արդյոք իմ սենյակին մոտ է, որ եթե պետք գա, հնարավոր լինի նրանով իջնել»: Ջրհորդանը անցնում էր ճաշասենյակի պատուհանների միջամասով: Վլադիմիր Իլյիչը խնդրեց ճաշասենյակի երկրորդ լուսամուտը, որն ավելի մոտ էր իմ սենյակին, մյուս լուսամուտների հետ ձմռան կապակցությամբ չամրացնել:*

*Նա անցավ պատշգամբ, հաշվեց լուսամուտները և ասաց. «Սենյակը ճիշտ է ընտրված, հաջող է»: Պատշգամբից նա նայեց հարևան տեղամասին, ուր գտնվում էր ցեղական թռչունների բուծարանը, որ մեր տնից բաժանված էր տախտակյա համատարած ցանկապատով: Վլադիմիր Իլյիչն ասաց. «Այսօր երեկոյան փոքրիկ մուրճը վերցրեք և ներքևում ջրհորդանի դիմացի երկու տախտակը հանեք»:*

*Որպես կանոն, Վլադիմիր Իլյիչը վճռականորեն աչքի էր անցկացնում այն ժամանակ Պետրոգրադում լույս տեսնող բոլոր թերթերը: Իմ պարտականության մեջ էր մտնում՝ մինչև աշխատանքի գնալը, ժամը 10-ին, ձեռք բերել բոլոր թերթերը: Այդ գործով ես պետք է զբաղվեի առավոտյան ժամը 7-ին: Հաճախ բոլոր թերթերը Լեսնոյում գնել չէր կարելի, հարկ էր լինում գնալ քաղաք և այնտեղ փնտրել: Պատահում էր երբեմն, որ թերթերի հայթայթումը վերջանում էր առավոտյան, նախաճաշից հետո, որ ժամը 10-ից ուշ չէր լինում:*

*Վլադիմիր Իլյիչը ծայր աստիճան անբավական էր մնում, երբ ինչ-որ պատճառով չէր հաջողվում ձեռք բերել այս կամ այն թերթը: Սովորաբար դեռ երեկոյան նա նախազգուշացնում էր ինձ թերթերի իմ պարտքերի մասին՝ տալով ինձ ձեռք չբերված թերթերի համարների ցուցակը:*

*... Հոկտեմբերի 24-ն է: Ժամի երեքին նստած իմ աշխատավայրերից մեկում, Վասիլևսկի կղզում գտնվող Դևրիենի հրատարակչությունում, իմացա, որ բացված են կամուրջները, և քաղաքում եկույթ է ունենում զինված բանակը: Ես անմիջապես թողեցի աշխատանքը և ամենից առաջ անցա չորրորդ գծից դեպի Նիկոլաևյան կամուրջը, համոզվելու՝*







բացված է արդյոք կամուրջը, մի բան, որ հաստատվեց: Այն ժամանակ գնացի Պետրոգրադյան կողմը, ուր անցա բավական հանգիստ և ընկա Սամսոնովյան կամուրջի կողմը, որը նույնպես բացված էր. որոշեցի Գրենադերյան կամուրջով գնալ դեպի Վիբորգյան կողմը, որպեսզի հնարավորին չափ շուտ տուն ընկնեմ:

Գալով տուն, Վլադիմիր Իլյիչին պատմեցի, թե ինչ է կատարվում Պետրոգրադի փողոցներում: Վլադիմիր Իլյիչն անհապաղ ինձ մի նամակ տվեց Վիբորգյան կոմ՝ Նադեժդա Կոնստանտինովնային տանելու և ասաց, որ ինքը կարծում է, այլևս հետաձգել չի կարելի, և այսօր պետք է գնա Սմոլնի:

Ես գնում էի և չգիտեի, որ դա «նամակ Կենտկոմի անդամներին»-ն էր: Այդ նամակում Վլադիմիր Իլյիչը գրում էր.

«Ընկերներ:

Ես այս տողերը գրում եմ 24-ի երեկոյան. դրությունը ծայրաստիճան կրիտիկական է: Պարզից էլ պարզ է, որ այժմ, արդեն հիրավի, ապստամբությունն ուշացնելը մահվան է հավասար». և հետո. «ոչ մի դեպքում իշխանությունը չթողնել Կերենսկու և ընկերության ձեռքին մինչև 25-ը, ոչ մի կերպ, գործը վճռել անպայման այսօր՝ երեկոյան կամ գիշերը»:

Կոմիտեում միայն շատ խառը տեղեկություններ հաջողվեց ստանալ քաղաքում զարգացող դեպքերի մասին: Գրությունը, որ բերել էի ես Վլադիմիր Իլյիչին, նրան չբավարարեց: Նա երկրորդ անգամ ուղարկեց կոմիտե նոր գրությամբ: Երեկոյան մոտ ժամի 9-ին ես եկա և հաղորդեցի, որ կամուրջները իջեցված են, որ հարկ էր եղել բացելու, որովհետև կանանց «մահվան գումարտակի» խելքին փչել էր «չարաճճիություն անել»:

Երրորդ անգամ նա ինձ գրությամբ ուղարկեց Նադեժդա Կոնստանտինովնայի մոտ և ասաց, որ եթե 11-ի մոտ ես չվերադառնամ, ապա նա կվարվի այնպես, ինչպես որ հարկ կհամարի:

Եկա տասը րոպե շուտ, բայց Վլադիմիր Իլյիչին արդեն չհանդիպեցի բնակարանում: Սկզբում նույնիսկ շփոթվեցի, ընկնելով չլուսավորված բնակարանը: Վառեցի լույսը, նայեցի բնակարանը, բոլոր սենյակների դռները բաց էին, ճաշասենյակում սեղանի վրա թողնված չավարտված ընթրիքը և երրորդ մաքուր սարքը, որի վրա ես արդեն հետո տեսա մի նեղլիկ, երկար, փոքրիկ գրություն, որի մեջ գրված էր. «Գնացի այնտեղ, որտեղ դուք չէիք ուզում, որ ես գնայի: Ցտեսություն: Իլյիչ»:

Տեսնելով Վլադիմիր Իլյիչի ոչ գաղտնի ստորագրությունը՝ կարճառոտ «Իլյիչը», ես կարծես թե բոլորովին հանգստացա. Իլյիչի համար իմ մեջ ոչ մի վախ չմնաց: Ես պարզապես ասացի. «Իլյիչը գիտե, թե ինչ է անում»: Բայց էլի վճռեցի նրա հետևից ուղևորվել Սմոլնի: Այստեղ ես տեսա նրան այն պահին, երբ 100-րդ սենյակում նա հանում էր իր վերարկուն և գլխարկը, կեղծամի հետ միասին:

Առավոտյան մոտ ժամը 5-ին վերադարձա իմ բնակարանը: Եվ հենց նոր էի ամբողջ օրվա մեջ մի բան կերել ու անկողին մտել, երբ հնչեց պայմանական զանգը՝ մի երկար ու երկու՝ կարճ:

Առաջին պահին ես մտածեցի, թե չի կարող պատահել, որ դա Իլյիչը լինի: Հապա ո՞վ է այն ժամանակ: Դուրս եկա հարցնելու և մոռացա վերցնել դռան բանալին: Դա Նադեժդա Կոնստանտինովնան էր: Դուռը չբացած՝ նրան ես հաղորդեցի, որ Վլադիմիր Իլյիչը վաղուց արդեն Սմոլնիում է: Նադեժդա Կոնստանտինովնան ներս չմտավ և մեկնեց Վիբորգյան կոմիտե:

# ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՕՐԵՐ

*(Հին բոլշևիկ Մեխակ Սարգսյանի պատմածը)*

*Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ*

*Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*

*1920 թվականի մայիսի սկզբներին էր։ Դաշնակցականների հետապնդումներից խուսափելու համար ես փախել էի մեր լեռները։ Առավոտից մինչև երեկո շրջում էի սարերում, պատսպարվում քարանձավներում ու կիրճերում, սնվում էի միայն սունկերով ու պտուղներով։*

*Այդպես անցկացրի մոտ մեկ շաբաթ։ Մի օր տեղատարափ անձրև եկավ, և ես հարկադրված տուն գնացի…*

*Դեռ չէինք քնել, հանկարծ մեր դուռը թակեցին։ Ես շտապ մտա մյուս սենյակը, թաքնվեցի պահարանի ետևում։ Քիչ հետո կից սենյակում աղմուկ-աղաղակ բարձրացավ։ Մոտեցա դռանը, բանալու անցքից նայեցի։ Դաշնակցական խմբապետը, իր երկու զինվորների հետ ծեծում էր մորս… Չկարողացա համբերել. դուրս թռա և հարձակվեցի նրանց վրա։ Նրանք երեք հոգի էին, ես՝ մենակ. Նրանք պարանով կապեցին իմ ձեռքերը և դուրս տարան։ Դռան չխկոցի հետ ականջիս հասավ մորս ուժգին հեկեկանքը։*

*Նույն գիշեր ինձ տեղափոխեցին Բայազետի բանտը և գցեցին մի մութ ու խոնավ խցիկ։ Երբ բացվեց բանտի խավար լուսաբացը, ես ճանաչեցի բանտարկյալներից շատերին։ Դրանք Բայազետի Մայիսյան ապստամբության մասնակիցներն էին։ Նրանք ասացին, որ կից խցիկում է գտնվում ապստամբության ղեկավարներից մեկը՝ Բաղիկ Բաղիկյանը, որին բանտ են բերել ապստամբության պարտությունից հետո, տիֆով հիվանդ վիճակում։*

*Երբ ներս մտա, Բաղիկյանը դժվարությամբ թեքեց գլուխը և իր նվաղած ու թույլ հայացքը հառեց ինձ վրա։ Նրա՝ աչքերը մի պահ փայլեցին ուրախության լույսով. ես զգացի, որ նա ճանաչեց ինձ։ Հուզված մոտեցա նրան և ծունկի եկա։ Նա պառկել էր գետնին՝ թաց հարդի վրա և վրան ծածկած հնամաշ վերարկուի տակից անթարթ նայում էր խցիկի գորշ ու կեղտոտ առաստաղին։*

*— Ուրեմն հրդեհը Սևանում էլ մարեց,—դողացող ձայնով թույլ շշնջաց Բաղիկյանը և պարզեց ինձ իր գունատ, նիհար ձեռքը։— Բայց ոչինչ, սիրելիս, մի անհանգստանա, նորից կբորբոքվեն հրդեհները…*

*— Դե, իհարկե,—ասացի ես,—միայն թե դու քեզ լավ պահիր… հիվանդ ես… հյուծված…*

*— Ոչինչ, գեղեցիկ ապագայի հույսը ամենից լավ բժիշկն է, նա կփրկի ինձ…*

*Բաղիկյանի անկուն ու բոցավառ հոգին ինչպես միշտ, այնպես էլ այդ պահին հիացրեց ինձ։ Նույնիսկ բանտի մութ ու խոնավ խցիկում, հիվանդ ու տանջահար վիճակում նա չէր կորցրել իր հոգեկան արիությունն ու վեհությունը…*

*Միջանցքում լսվեցին ոտնաձայներ։ Ստիպված հրաժեշտ տվի սիրելի Բաղիկին և վերադարձա մեր խցիկը։ Ինձ այնպես էր թվում, թե այլևս չեմ տեսնելու նրան։*

*Գիշերը բանտի միջանցքում լսվեցին կասկածավոր խոսակցություններ։ Ոճրագործները ցանկանում էին Բաղիկին տանել գնդակահարելու։ Մենք որոշեցինք ամեն կերպ խանգարել նրանց։ Սկսեցինք բռունցքներով ծեծել պատերը և աղմուկ-աղաղակ բարձրացնել։ Նրանք Բաղիկյանին նորից տարան իր խցիկը։*

*Հաջորդ գիշերը հերթապահողը շտապ արթնացրեց մեզ։ Պարզվեց, որ դաշնակցականները նորից եկել էին Բաղիկյանին տանելու։ Մենք նորից աղմկեցինք։*

*Երեք օր հետո, առավոտյան դահիճները հայտա-*



պարզեցին, թե Բաղիկյանին Բայազետի բանտից տեղափոխում են Երևան, և նրան դուրս բերին բանտից: Այդ օրվանից այլևս չտեսա մեր մարտական ընկերոջը: Երկու շաբաթ հետո ինձ նույնպես տեղափոխեցին Երևանի բանտը, և այդտեղ ես իմացա սոսկալի լուրը. Դաշնակցական ավազակները Բաղիկյանին գնդակահարել էին:

— Երբ Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր, ես նշանակվեցի Սևանի շրջանի հեղկոմի նախագահ: Այդ ժամանակ լուրեր հասան իմ ականջին, որ Բաղիկյանին սպանել են Ախտայի մոտերքում: Հետաքրքրվեցի: Կանչեցի նախկին ուրյադնիկ, դաշնակցական Դայրուստին, որը սովորաբար Ելենովկայից Ախտա էր տանում բանտարկյալներին:



— Ես ոչ մի տեղեկություն չունեմ,— պատասխանեց նա:

— Եթե չես ասում, ուրեմն ինքդ ես սպանել:

Ուրյադնիկը դեմքը կնճռոտեց, վախեցավ: Հետո ազերսագին նայեց ինձ և պատմեց, թե ինչպես ինքը Բաղիկյանին Ելենովկայից տարել է Ախտա, հանձնել Շահրիզ գյուղացի Ամբատին:

Կանչեցի հաջորդ հանցագործին: Հարցաքննությունից հետո սա էլ խոստովանեց, որ ինքը Բաղիկյանին հանձնել է Վարվառասարայի բնակիչ Հարութին:

... Դեկտեմբերյան առավոտ էր: Դաշնակցական Հարութին գցելով առաջ, ուղևորվեցինք դեպի «Կլոր դարա» կոչվող վայրը: Փողոցներում մեզ միացան բազմաթիվ գյուղացիներ: Տեղ հասանք, Հարութը դես ու դեն ընկավ, ձեռքի փայտով մի քանի տեղ փորեց ձյունը և դառնալով մեզ, հայտարարեց.

— Այս կողմերում ինչ-որ մի տեղ էր, բայց չեմ կարողանում հիշել...

Հաջորդ օրը նորից գնացինք այդ վայրը: Այս անգամ մեզ հետ եկել էին շատ գյուղացիներ: Դաշնակցական ուրյադնիկը մինչև օրվա կեսը մեզ նորից քարշ տվեց և չէր ուզում ցույց տալ տեղը:

— Բավական չէ՞ մեզ տանջես, ավազակ. եթե անմիջապես չասես, թե որտեղ է գերեզմանը, ես քեզ շան նման կսատկացնեմ,— սպառնաց շրջկոմի քարտուղար Իոն Շչեգրինը և հանեց ատրճանակը:

Հանցագործը սարդի նման կծկվեց, չոքեց ձյան վրա, հետո դողալով հեռացավ մեզանից և վերջապես ձեռքի փայտով ցույց տվեց ձյան փոքրիկ բլրակներից մեկը: Մենք անմիջապես մաքրեցինք ձյունը, և մեր աչքերի առաջ բացվեց հողի ու քարերի մի փոքր թումբը: Փորեցինք և հայտնաբերեցինք դիակը: Հետո զգուշությամբ հանեցինք մեր ընկերոջ դին և սահնակով տեղափոխեցինք Ելենովկա:

Պարզվեց, որ գազանները նրան սպանել էին երկու գնդակով՝ մեկը կպել էր կրծքին՝ իսկ մյուսը՝ գլխին:

Ելենովկայում կազմակերպվեց սգո միտինգ, որին մասնակցում էին հազարավոր գյուղացիներ: Կեսօրին, սահնակով Բաղիկ Բաղիկյանի մարմինը տեղափոխեցինք նրա հայրենի քաղաքը՝ Բայազետ և հանձնեցինք հողին:

# ՀՈԿՏԵՄԲԵՐ

*ՍԱՐՄԵՆ*

Դու մեր մայրերի սիրտն ես խնդալի
Ու մանուկների ժպիտը վառման,
Դու անուշ երգն ես գարնան անտառի,
Ոսկե արտերի ծովերն անսահման:

Դու այս նորակերտ քաղաքներն ես մեր
Ու այս շենքերը՝ պերճ ու գեղազարդ,
Դու մեր լեռներն ես, որ փառքով անմեռ
Աստղերին հասած՝ շողում են ազատ:

Դու հնոցներն ես մեր հայրենիքի,
Որ գիշեր-ցերեկ պողպատ են հալում:
Դու ամբարներն ես մեր առատ բերքի
Ու ամենամեծ տոնը աշխարհում:

Դու ես, այդ դու ես բերել մեզ համար
Այս ծաղիկները, այս երգերն ուրախ,
Երկիրը նախշած այս լույսերն անմար,
Ուսում, գիտություն, աշխատանք ու խաղ:

Փա՜ռք քեզ, Հոկտեմբեր, դու օր ծննդյան
Մեր այս նոր կյանքի և ազատության:

# ԻՄ ԼՈՐԵՆԻՆ...

*Գ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

Լյուբով Տիմոֆեևնան սիրում է լինել այստեղ՝ իր աղջկա անունը կրող դպրոցում: Նա բարձրանում է երրորդ հարկ, մոտենում այն դռանը, որի կողքին կա մի մակագրություն. «Այս դասարանում սովորել են Սովետական Միության Հերոսներ Զոյա և Շուրա Կոսմոդեմյանսկիները»: Մտնում է ներս. ահա միջին շարքի երկրորդ նստարանը, որտեղ նստում էր Զոյան... Ինչպիսի՜ հուշեր են արթնանում մոր սրտում: Հիմա Զոյայի տեղը նստել է մի բխաղեմ աղջիկ...

Դպրոցի չորս բոլորը ծառեր են աճել: Այդ ծառերը տնկել են իրենք՝ երեխաները: Ու հանկարծ մորը թվում է, թե կանաչ, մուգ կանաչ սաղարթների միջից իրեն ժպտում է Զոյան և կամաց շշնջում. «Իմ լորենին երրորդն է, միտդ պահիր, մայրիկ...»:

Ի՞նչ իմանար մայրը, որ իր աղջիկը՝ բարակ, քնքուշ ձեռքերով այդ լորենին տնկող Զոյան դառնալու լեգենդար հերոսուհի:

* * *

... Թափում էր անտառն իր ծիրանի զարդերը: Զոյան ցանցը ձեռքին վազվզում էր գույնզգույն թիթեռնիկների ետևից, ծաղիկներ էր հավաքում: Հետո մագլցում էր ծառերը: Ինչպիսի՜ հանույք էր Զոյայի համար:

Զոյան լողալ է սովորում հոր հետ: Հայրը գետի ուղիղ մեջտեղը բաց է թողնում աղջկան: Նա թպրտում է, շնչահեղձ լինում, բարձրանում ջրի երեսը, կրկին սուզվում: Ու ոչ մի ձայն չի հանում նա այդ բարալիկ, խոշոր, մոխրագույն աչքերով աղջիկը:

Կեցցե՜ս, էլի մի փորձ, և դու կկարողանաս լողալ,—հուսադրում է նայրը:

Այսպես կոփվում էր փոքրիկ աղջկա կամքը:

Մայրը հիշում է, թե ինչպես էր աղջկան առաջին անգամ տանում դպրոց: Հետո նա մեծացավ, մտավ կոմերիտմիության շարքերը:

Զոյան սիրում էր գրքերը, իր ուսուցիչներին, ընկերներին, սիրում էր կյանքը: Կարդում էր Պուշկին, Լերմոնտով, Լև Տոլստոյ, Չերնիշևսկի, Գորկի, Մայակովսկի, Գյոթե, Հովհաննես Թումանյանի «Անուշը», Արկադի Գայդարի հիանալի երկերը, պատմական լուրջ աշխատություններ...

Երբ Զոյան կարդում էր «Բոռը», նրա աչքերից թափվում էին արտասուքները, թրջում այտերը, գրքի էջերը: «Ա՜խ, ինչպիսի հերոս է Արթուրը...»—շշնջում էր նա:

Կարդում է ակնարկ՝ Տանյա անունով մի հերոսուհու մասին: Տանյային օրեր շարունակ տանջում են թշնամիները, իսկ երբ տանում են սպանելու, նա դահիճներին է նետում հետևյալ խոսքերը. «Դուք կարող եք տանջել ինձ ինչքան որ ուզենաք, կարող եք սպանել ինձ, բայց սովետները չեն մեռել, սովետներն ապրում են: Նրանք կվերադառնան»:

Տանյայի խոսքերը մինչև հոգու խորքը հուզում են Զոյային: Նա մարգարտաշար պարզ ձեռագրով իր հուշատետրում գրել է Գորկու «Հատակում» պիեսից. «Ստուր ստրուկների ու տերերի կրոնն է, ճշմարտությունը՝ ազատ մարդու աստվածը... Մարդ... Դա հոյակապ է: Դա հպարտ է հնչում»:

Նոր էջեր, նոր գրառումներ:

Պատերազմ... Զոյան չէր կարող հանգիստ նստել թիկունքում:

Եվ նրան բռնեցին ռազմական առաջադրանքը կատարելիս

— Ո՞վ եք դուք,— հարցնում էր փոխգնդապետ Ռյուդերերը:

— Չեմ ասի:

— Այդ դո՞ւք եք վառել ձիանոցը:

— Այո՛, ես:

— Ձեր նպատակը:

— Ոչնչացնել ձեզ...

Եվ այնուհետև լսվում էին միայն՝ «Ո՛չ, չգիտեմ, չեմ ասի, ո՛չ» խոսքերը:

Չորս աժդահա ֆաշիստներ գոտիներով ծեծում էին աղջկան: Ոչ մի ձայն: Զինվորները խփում էին նրան, լուցկի մոտեցնում ծնոտին, սղոցը քաշում մեջքի վրայով: Հետո բոբիկ ոտքերով, միայն սպիտակեղենով նրան դուրս էին բերում ձյան վրա, նրնքան սառնամանիքին տանում Պետրիշչևո գյուղի փողոցներով:

Նրան կախաղան հանեցին մյուս օրը: Կրծքից կախեցին նրանից խլված բենզինով լի շշերը և մի տախտակ՝ «Հրձիգ» մակագրությամբ:

Սպաներից մեկը տարբեր կետերից լուսանկարում էր կախաղան հանվող աղջկան: Զոյան օգտվելով դրանից՝ դարձավ հավաքված մարդկանց.

— Է՜յ, ընկերնե՛ր, ինչ եք նայում այդպես տրտում: Համարձակ եղեք. պայքարեցե՛ք, խփեցե՛ք, այրեցե՛ք, թունավորեցե՛ք ֆաշիստներին...

Զոյան հրեց ֆաշիստի ձեռքը և շարունակեց.

— Ինձ համար սարսափելի չէ մեռնելը, ընկերնե՛ր, երջանկություն եմ համարում ժողովրդի համար մեռնելը...

Լուսանկարիչը մոտեցավ, որ մոտիկից նկարի կախաղանը:

Պարետը գոռաց նրա վրա:

— Աբեր դոխ չնելլեր (շուտ արա)...

Զոյան բարձր գոչեց.

— Հիմա դուք ինձ կկախեք, բայց ես մենակ չեմ: Մենք երկու հարյուր միլիոն ենք, բոլորին չեք կախի: Ձեզնից վրեժ կլուծեն ինձ համար... Հաղթանակը մերը կլինի...



Մեռավ Զոյան, բայց նրա փառքը բնդաց աշխարհում, նրա սխրանքը ոգևորեց շատ ու շատերին:

Ու հիմա նրա անունը կրող դպրոցի բակում, որտեղ սովորել է հերոսուհին, մեղմ սոսափում է նրա տնկած լորենին: Մայրը՝ Լյուբով Տիմոֆեևնան, կանգնում է լորենու տակ, հանգիստ սվսվում են տերևները, և թվում է, թե լսվում է Զոյայի ձայնը.

— Իմ լորենին երրորդն է, միտդ պահիր, մայրիկ...

# ԱՄԵՆԱՈՒԺԵՂԸ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ռ. ՀՈՎԻՎՅԱՆԻ

*Դպրոցը նորակառույց էր. դեռ չէին պարսպապատել. բայց հենց այդ վիճակում էլ շատ լավ էր: Դպրոցի և հարևան տների միջև, որոնք նույնպես նորակառույց էին, սահման գոյություն չուներ: Տասնյակ բակեր միացած էին դպրոցի բակին: Զտեսնված լավ էր: Դասամիջոցներին շատերը խաղում էին իրենց բակերում, իսկ դասերից հետո, այդ շատերը դպրոցի բակում էին խաղում: Ամենևին էլ հարկավոր չէր դպրոցի բակը պարսպապատել: Տխուր օրեր կլինեին դրանք:*

*Այդ օրը. պարապմունքներից հետո, երբ երեխաները դուրս եկան դասարաններից, տեսան, որ բակում ավազ էին թափել: «Մի՞թե արդեն»,— տխրությամբ մտածեցին հարևան բակում ապրողները: Բայց դպրոցի տնտեսվարից իմացան, որ ավազը բերել էին ուրիշ նպատակի համար. բակի կենտրոնում ջրավազան էին կառուցելու:*

*Երեխաների ուրախությանը չափ չկար. պայուսակները մի կողմ նետվեցին, և ավազի վրա սկսվեց խաղն ու կատակը: Իհարկե ոմանք էլ անհամ կատակներ արին և բռով մյուսների վրա ավազ շաղ տվեցին:*

Հանկարծ մի չտեսնված միտք ծագեց.

— Ավազի վրա շատ հարմար է գոտեմարտելը, եկեք փորձենք՝ ո՞վ է ամենաուժեղը։ Նախ սկսում են ամենաթույլ զույգերը,— սկսեց խոսել Վարդգեսը,— պարտվողը դուրս է գալիս, հաղթողը մի քիչ հանգստանում է ու շարունակում հաջորդի հետ։

Բոլորը համաձայն էին։

Վարդգեսը շատ լավ գիտեր, թե ով ումից է ուժեղ։ Նա ճարպիկ ու ճկուն տղա էր. նրա ուժի մասին, տղաներից ոչ մեկը որոշակի բան չգիտեր։ Շատ հաճախ նա կպչում էր բարձր դասարանցիների հետ ու անմիջապես էլ մի պատրվակով ճողոպրում էր. այնպես, որ տղաներից շատերը՝ երբեմն նրան դասում էին ամենաուժեղների շարքում։

— Սեդրակն ու Նորիկը թող սկսեն,— որոշեց նա։

Ուրեմն բոլորն էլ գիտեն, որ Սեդրակն ու Նորիկը ամենաթույլ տղաներն են. գոնե Սեդրակի տրամադրությունը ընկավ, իսկ Նորիկի համար միևնույն էր. նա առաջվա նման աշխույժ և ուրախ էր։

— Ոտքից բռնել չկա,— պայման դրեց Սեդրակը։

— Լավ, լավ,— շտապ վրա բերեց Նորիկը։ Նրա համար միևնույն էր։

— Վզից էլ պինդ հուպ տալ չկա.

— Լավ, լավ,— կրկնեց Նորիկը։

Ըմբշամարտը սկսվեց. Սեդրակն ու Նորիկը մի քիչ քաշքշեցին իրար, հետո անսպասելիորեն Նորիկը ընկավ ավազների վրա։ Եվ երբ Սեդրակը ցատկեց դեպի նա, Նորիկը առանց երկար դիմադրելու, շուռ եկավ մեջքի վրա և ուրախ ձայն տվեց։

— Ուռա՛, Սեդրակը հաղթեց,— նա վեր թռավ ու սկսեց գժություններ անել։

Սեդրակի արժանապատվությունը վերականգնվեց։ Բայց ո՞վ էր լինելու հաջորդը... ով էլ որ լիներ, միևնույն է, կհաղթեր Սեդրակին։

Դուցե Սեդրակը դրանից էր այդքան թույլ, որ տարին մի քանի անգամ հիվանդանում էր։ Նա կոկորդում գեղձեր ունի, երբ գեղձերը հեռացնեն, միանգամից կուժեղանա։ Բայց չէ՞ որ բոլոր մյուսների մեջ էլ, որոնք գեղձեր չունեն, թույլեր կան. Սեդրակը թերևս նորից թույլերի մեջ ընկնի։ Չէ, չարժի գեղձերը հեռացնել։

Սեդրակին հաղթեց Աշոտը։ Գոտեմարտը գնալով դառնում էր ավելի հետաքրքիր ու լարված։

Երեխաները մագնիսի պես կպչում էին իրար։ Նրանք շատ լավ գիտեին, ով է ավելի ուժեղը. բայց թույլը ուզում էր հաղթել, նա ռետինի պես ձգվում էր, ծալվում, չէր ենթարկվում. հետո հակառակորդը խորամանկորեն փորձում էր խաբել ախոյանին, բայց դիմացինը արագ կողմնորոշվում և զգում էր նրա ուժի աճն ու նվազումը։

Նրանք ընկնում էին ավազի վրա, թավալվում, ձգվում զսպանակի պես։ Հանկարծ անսպասելի արագությամբ ինչ-որ բան էր տեղի ունենում, որից հետո երկար ժամանակ նրանք մնում էին անշարժ։ Ավելի ուժեղի համբավ ունեցողի համար. այդ վիճակը այնքան էլ պատվաբեր չէր. հենց նա էլ լի-



նում էր նախաձեռնողը։ Երբեմն երկուսի համար էլ ստեղծվում էին ամենաանհարմար դրություններ, ու հարկադրված նրանք բաժանվում էին իրարից, նորից սարի նիստում՝ շնչասպառ ու կռացած։ Այդ հավասար վիճակից թույլը հուսադրվում, իսկ ուժեղն սկսում էր կորցնել հավասարը։ Հետո նորից գրկվում, սեղմվում էին իրար, մինչև գալիս էր այն րոպեն, երբ կողմերից մեկի համար հանգրվանը դառնում էր ավելի ցանկալի, քան հաղթանակը։ Այդ ժամանակ ահա տեղի էր ունենում պարտություն։ Ու անմիջապես հետո էլ պարտվողը գոչում էր. «Ինչո՞ւ մի փոքր էլ չհամառեցի»։

Աշոտին հաղթեց Գրիգորը, Գրիգորին՝ Լևոնը, Լևոնին՝ Հակոբը, Հակոբին՝ Ռաֆիկը, Ռաֆիկին...

Նախ թվում էր, Խաչիկը կհաղթի Ռաֆիկին, բայց անսպասելիորեն իր ուժերը լարելով, Ռաֆիկը գետնեց Խաչիկին։

Ավազաթմբից քիչ հեռու, հանգիստ կանգնած էր Դերիկը՝ ծառաբնին հենված։ Նա ամենաուժեղն էր և անվրդով սպասում էր, որ այդ հայտնի ճշմարտությունը նորից ապացուցվի։ Յուրաքանչյուր հաղթող մեծ հաճույքով հենց միայն այն էր մտածում, որ ավելի մոտեցավ ու նմանվեց Դերիկին։

Դերիկի համար միևնույն էր, ով է իր հետ ֆինալ ընկնելու։

Երբ ամեն ինչ նախապատրաստված էր, Դերիկը եկավ ու գետնեց Սմբատին։ Դրանով էլ մրցությունը վերջացավ։

Երեկոյան Սեղրակը բակում նստած տանավոր էր անգիր անում։ Բակի խորքից երևաց Դերիկը, երկու դույլ մի ձեռքին և մյուսին՝ բահ։ Նա մոտեցավ ավազաթմբին, ցած դրեց դույլերը և բահով սկսեց ավազը լցնել դույլերի մեջ։

Սեղրակը տեղից վեր կացավ և մոտեցավ Դերիկին։

— Այդ ի՞նչ ես անում, Դերիկ։

Դերիկը քչախոս էր և միայն շատ անհրաժեշտ դեպքերում էր պատասխանում։

— Չի՛ կարելի, Դերի՛կ։

Դերիկը շարունակում էր իր գործը։ Երբ դույլերից մեկն արդեն լցված էր, նա սկսեց լցնել մյուսը։ Անսպասելիորեն Սեղրակը ոտքով հրեց լցված դույլը, դույլը շուռ եկավ, Դերիկը զարմացած նայեց Սեղրակին։ Տղաներից մի քանիսը նկատելով այդ՝ մոտեցան. նրանց միացան և ուրիշները։ Երբ երեխաները տեսան շրջված դույլը, նրանց համար ամեն ինչ պարզվեց։ Դերիկը մի քանի անգամ բահով թեթևակի փորփրեց ավազը, հետո նորից սկսեց նայել Սեղրակին։ Կարծես Սեղրակը նրա առաջ պայման էր դրել. «Ոտքից բռնել չկա, վզից բռնել չկա, մեջքից բռնել չկա, ձեռքից բռնել չկա»։

Ու Դերիկը չգիտեր, թե ինչպես հաղթի իր հակառակորդին։

Տղաները լուռ սպասում էին։ Հետո Դերիկը անսպասելիորեն դատարկեց ավազը, ապա վերցնելով բահն ու դույլերը, հեռացավ։

Տղաները նայում էին Սեղրակին, նայում էին հեռացող Դերիկի ետևից։

Բոլոր-հաշիվները խառնվել էին։

Ո՞վ էր ամենաուժեղը։





## Ծիծեռնակներ

Ծիծեռնակնե՛ր. գնաք բարով,
Ձեր երկնային ճանապարհով
Հեռանում եք դուք,
Թողած դաշտերը հայրենի,
Թողած շղթան մեր լեռների,
Եվ ծմեռը բուք։

Ձեզ կանչում են հեռուներից,
Կարոտի պես վառ ու թովիչ,
Երկրները տաք,
Որ ծլվլաք կտուրներին,
Ու հանդիպեք ծեր քույրերին
Եվ ուրախ մնաք։

Ծիծեռնակներ, գնաք բարով,
Ձեր երկնային ճանապարհով
Գնում եք հեռու,
Ծիծեռնակներ գեղեցկաթև,
Սիրունիկներ չալտիկ ու սև,
Դուք ե՞րբ եք գալու։

## Մեր թխած հացը

Ս. ԽԱՐԱՋՅԱՆ

Աղյուսներով վարդագույն
Փուռ շինեցինք մեր բակում,
Ու մեր խումբը որոշեց
Հաց թխել այդ փռան մեջ։

Իմ տաշտակում գեղեցիկ
Հողից ալյուր մաղեցինք,
Մաղով մաղեց Շուշիկը,
Խմոր հունցեց Նուշիկը։

Մերուժանն ու Հաբեթն էլ
Դարձան հացթուխ վարպետներ,
Իսկ իմ քույրիկ Ջեմ․յուրը
Շորով մաքրեց մեր փուռը։

Հետո հացթուխ քեռուս պես
Գնդիկները լցրինք ներս,
Թխվեց շուտով, բայց զարմա՜նք
Մենք այդ հացից չկերանք։

Ո՛չ էլ փիսիկը կերավ,
Ո՛չ էլ հավիկը մեր չալ,
Ո՛չ խոզիկը ճղճղան,
Ո՛չ քուչիկը մռմռան։



Նկ. Տ. ԹՈՒՄԱՋՅԱՆԻ

— Վերջ,— ասաց Հրաչիկը, ամրացնելով վերջին պտուտակը:

— Լավն է,—հիացմունքով ավելացրեց Հայկը: Բայց չեմ հասկանում, ինչի՞ համար է այս ապարատը:

Սեղանի վրա դրված էր միջին մեծության գլանաձև մի արկղ, որի եզրերին գտնվում էին մի քանի կարմիր ու կանաչ ազդանշանային լամպեր:

Քննությունները վերջացնելուն պես, արձակուրդի առաջին իսկ օրերից, ընկերները սկսեցին պատրաստել այդ ապարատը, որին Հրաչիկը տալիս էր «դեֆրիկցիոն» անունը: Որքան էլ զարմանալի թվա, Հայկը ոչինչ չգիտեր այդ ապարատի էության մասին, չնայած մի քանի մասեր պատրաստել էր սեփական ձեռքերով: Հրաչիկը նրան խոստացել էր, որ վերջացնելուց հետո ամեն ինչ կպատմի:

— Օ՜յ... ինչ լա՜վն է,— մոտենալով սեղանին, ուրախացավ Հրաչիկի փոքրիկ քույրը՝ Անահիտը:

— Հեռու կանգնիր...— վախեցած գոչեց Հրաչիկը:

Անահիտը ետ գնաց ու հեռվից սկսեց հրճվել ապարատի կորպուսով: Փայլուն տուփը, որի պատերը ծիծաղելի կերպով արտացոլում էին շրջապատի առարկաները ճիշտ այնպես, ինչպես ծուռ հայելիները, անասելի բավականություն պատճառեց նրան: Ամենից շատ, Անահիտին դուր եկավ ապարատի վրա գտնվող թիակավոր անվակը, որին հարվածելիս՝ սկսում էր մեծ արագությամբ պտտվել:

Հրաչիկը արագ-արագ կարգի բերեց սեղանը, հավաքեց գործիքներն ու Հայկի հետ դուրս եկավ:

Դրսում հիանալի էր: Քաղաքամերձ անտառներից ամառային քամին բերում էր մի ինչ-որ հաճելի ու անչափ ծանոթ բուրմունք: Ընկերները լիաթոք շնչեցին և գնացին դեպի դպրոցի մեխանիկական արհեստանոցը:

— Այս երեկո «դեֆրիկցիոնը» կփորձարկենք,— ասաց Հրաչիկը:

Հայկը զարմացած նրան նայեց:

— Իսկ ինչո՞ւ անպայման երեկոյան. կարող ենք հիմա էլ փորձարկել:

— Հասկանո՞ւմ ես, երեկոյան մերոնք տանը չեն լինի: Երբ որևէ մոդել կամ ապարատ փորձարկում եմ տնեցիների ներկայությամբ, անպայման ձախողվում եմ:

Հայկը ծուռ-ծուռ նայեց ընկերոջը: Նա երևի ուզեց ասել, որ ձախողվելու պատճառը ոչ թե տնեցիների ներկայությունն է, այլ Հրաչիկի մի շատ տարօրինակ սովորությունը: Պատանի գյուտարարը, ինչպես հաճախ էին անվանում Հրաչիկին, ընդհանրապես սովորում էր հանձնարարված դասի միայն առաջին մասը: Նույնիսկ մոդելների բացատրագրերը կարդալիս, Հրաչիկը բոլորովին ուշադրություն չէր դարձնում վերջին էջերի վրա և ինչ խոսք՝ մոդելն էլ ստացվում էր անդամահատված:




(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

Կ. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

* * *

Հրաչիկի տնից դուրս գալուց հետո, Անահիտը համարձակությամբ մոտեցավ ապարատին: Հետո, որպեսզի թիակավոր անվակը պտտվի, նա հաղորդալարերը միացրեց շտեպսելին:

Կարմիր ու կանաչ լամպերը սկսեցին թարթել: Թույլ ձայնով բզզաց թիակավոր անվակը:

Այդ նույն վայրկյանին Անահիտը զգաց, որ ինքը սեղանի վրայից ցած է սահում: Նա թռավ հատակին, բայց չկարողացավ կանգնած մնալ: Թվում էր, թե ոտքերի տակ չափազանց ողորկ սառույց է գտնվում:

Սենյակը կարծես զարթնեց երկարատև ու խորը քնից:

Ծանր պահարանը, աթոռները, մահճակալը, գրքերն ու տետրերը, հատակին փռած գորգը, որոնք առաջ հանգիստ կանգնած էին իրենց տեղերում, ծիծաղելի կերպով սկսեցին սահել:

Անահիտը կորցրեց հավասարակշռությունը և մյուս իրերի հետ սահեց սենյակի մի կողմը: Շփոթվելով այս տարօրինակ դրությունից, Անահիտը դուրս նայեց ու սարսափած ճչաց...

* * *

— Ֆիզիկայից անցել ենք, որ շփումը բացասական երևույթ է, ճիշտ է...— ասաց Հրաչիկը:

— Ինչո՞ւ... շփումը բոլորովին էլ...

— Հարց ես տվել, ուրեմն լսիր պատասխանը: Շփումը հաղթահարելու համար մարդիկ տարեկան հիսուն միլիոն տոննա քարածուխ են վառում: Ճիշտ է: Իսկ ինչպե՞ս են պայքարում շփման դեմ:

— Դե, այդ ո՞վ չգիտի... քսայուղերով, հատուկ առանցքակալներով...

— Ճիշտ է, իսկ «դեֆրիկցիոնը» արձակում է „Z“—W, որի ազդեցության տակ շփման ուժը փոքրանում է 1500 անգամ:

Ընկերները մտան արհեստանոց:

— Վերջացրե՞ք ձեր ապարատը, տղաներ,—ակնոցների վրայից նայելով հարցրեց վարպետը:

— Այո... բայց դժվար թե աշխատի,— հոգոց հանելով, ասաց Հայկը:



— Ինչու,— զարմացավ վարպետը:

— Շատ պարզ: Հրաչիկը երևի էլի մի քանի պակաս կարդացած կլինի:

— «Դեֆրիկցիոնը» անպայման կաշխատի: Գիտես քանի անգամ եմ հաշվել „Z“—W-ի արագությունը: Մեկ կիլոմետրը՝ մեկ ժամում,— տաքացավ Հայկը:

— «Զեթ-դուբլվե»... իսկ ինչ բան է դա,— հարցրեց վարպետը:

— Դա „Z“—Wave բառի համառոտումն է: Նշանակում է «խորհրդավոր ալիքներ», որոնց ազդեցության տակ շփումը 1500 անգամ փոքրանում է...

Հանկարծ էլեկտրամոտորները սկսեցին խլացնողորեն պտտվել: Վարպետը շփոթմունքից ետ-ետ քաշվեց շրջադարձ-պտուտակահան հաստոցից:

Հրաչիկը մոտ վազեց: Էլեկտրամոտորը պտտվում էր, իսկ փոկերը հանգիստ կանգնած էին, հրաժարվելով հաստոցի փոկանիվը պտտելուց:

Հայկը զգաց, որ կորցնում է հավասարակշռությունը: Ոտքերը սահում էին... դա սարսափելի բան էր... սահել թեփի վրա...

Փողոցում ինչ-որ անկարգություն էր սկսվել: Հրաչիկը հարցական նայեց Հայկին: Վերջինս ուսերը թոթվեց: Հետո նրանք դուրս նետվեցին:

Հեշտ է ասել... նրանք պարզապես մի կերպ դուրս եկան արհեստանոցից:

Փողոցը սարսափելի վիճակում էր գտնվում: Ավտոմեքենաները, անցորդները, անկյունում դրված նստարանները, մի խոսքով ամեն ինչ հոսում էր փողոցի թեքության կողմը:

Քայլել չէր հաջողվում... ոտքերը սահում էին ասֆալտի վրա, ճիշտ այնպես, ինչպես սահադաշտում:

— Այս ինչ է պատահել,—հազիվ-հազ հարցրեց Հրաչիկը:

— Լսիր, Հրաչիկ... կարծես թե... շփում չկա...— վախեցած պատասխանեց Հայկը:

— Շփում չկա... չլինի՞ «դեֆրիկցիոնը» աշխատում է... օ՜յ... Անահիտը միայնակ կլինի... վազենք... վազենք տուն...

Բայց նրանք բոլորովին էլ չվազեցին: Ոտքերը իրարից հեռու-հեռու դնելով, որպեսզի հավասարակշռությունը չկորցնեին, նրանք պարզապես կրիայի քայլերով ուղղվեցին դեպի տուն:

Բարեբախտաբար Հրաչիկենց տունը գտնվում էր փողոցի թեքության կողմը, և նրանք մյուս բոլոր առարկաների հետ սկսեցին սահել դեպի ցած:

— Հրաչիկ, եկ նստենք նստարանին,— առաջարկեց Հայկը:

Սակայն նստարանը կարծես փախչում էր նրանցից: Ընկերները արագացրին քայլերը... դա էլ չօգնեց: Հայկը մարմինը թեքեց առաջ և թափ առնելով, ինչպես սահադաշտում, բայց առանց չմուշկների, սահեց դեպի նստարանն ու նստեց վրան: Հրաչիկը հետևեց նրան: Նստարանը ծանրանալով, սկսեց սահել ավելի արագ: Տղաները փաթաթվելով նրա թիկունքին, գոհունակությամբ ժպտացին:

... Նստարանի վրա նստած՝ նրանք սահում էին դեպի տուն, երբ հանկարծ Հրաչիկի աչքով ընկավ մի ավտոմեքենա, որին վարորդն աշխատում էր ընթացքի մեջ դնել: Անիվները մեծ արագությամբ պտտվում էին, բայց մեքենան շարժվելու ոչ մի մտադրություն չուներ:

Մի հեծանվորդ չէր կարողանում արգելակել հեծանիվը և արդեն հույսը կտրած, ձեռքերը գրկել էր գրպաններն ու առանց ուշադրության դարձնելու շրջապատի վրա, խելակորույս ցած էր սլանում:

— Լսիր, Հրաչիկ, եթե այսպես շարունակվի, վթարներն ու դժբախտ պատահարներն անխուսափելի կլինեն,— մտահոգված ասաց Հայկը:— Դու ինքդ էիր ասում, որ յուրաքանչյուր ժամվա ընթացքում „Z“—W-ն իր ազդեցության գոտին մեծացնում է մեկ կիլոմետրով:

Հրաչիկը չպատասխանեց: Նա մտածում էր, թե հատկապես ինչը հաշվի չի առել ապարատի պատրաստման ժամանակ:

... Անցորդները չէին հասկանում, թե ինչ է կատարվում շրջապատի հետ: Աղջիկները վախեցած ճչում էին... Պաղպաղակ վաճառողը նստել էր «էսկիմոներով» լի արկղի վրա ու դեմքի անհամբեր արտահայտությամբ սլանում էր փողոցն ի վար, երբեմն-երբեմն, ըստ սովորության գոչելով. «Սառը պաղպաղակ... էսկիմո...» Մի ծերունի բարկացած փնթփնթում էր. Նրա ակնոցը հրաժարվում էր քթարմատին նստելուց: Ավելի շրջահայացները գրկել էին ծառերն ու սարսափով հետևում էին արտասովոր անկարգությանը:

— Հասանք,— ասաց Հայկը, սթափեցնելով Հրաչիկին:

Նրանք ցած թռան նստարանից և ցանկապատի

ճաղերը գրկելով մի կերպ հասան շրջամուտքին։— Մոտ տասը րոպե տևեց, մինչև նրանք բարձրացան երկրորդ հարկ։ Բնակարանում ամեն ինչ տակն ու վրա էր եղել։ Ոչ մի առարկա իր տեղում չէր գտնըվում։ Բոլորը կուտակվել էին սենյակի թեքության կողմը։

Անահիտը դեռ լուսամուտի մոտ էր ու սարսափով նայում էր կարծես խելագարված փողոցին։

Հրաչիկը մոռանալով նույնիսկ բարկանալ քրոջ վրա, նետվեց դեպի «դեֆրիկցիոն» ապարատը և փորձեց անջատել։ Բայց չհաջողվեց։ Անջատիչը սահում էր մատների արանքից։ Իսկ թիակավոր անվակը շարունակում էր պտտվել ու չորս կողմի վրա տարածել խորհրդավոր ալիքները։

Հրաչիկը անօգնական հայացքով նայեց ընկերոջը։ Հայկը միայն գլուխը տխրությամբ շարժեց։

Նրանք չկարողանալով ոտքի վրա մնալ, նստեցին հատակին ու իրենք էլ չնկատեցին, թե ինչպես սահեցին դեպի սենյակի անկյունը։

— Չեմ հասկանում...— մտածկոտ ասաց պատանի գյուտարարը,— դասագրքում պարզ գրված է շփման վնասակարության մասին...

— Այո, բայց շփումը նաև օգտակար երևույթ է։ Դու ապարատը այնպես պետք է պատրաստեիր, որ հնարավոր լիներ դեֆրիկցիա[1]) առաջացնել միայն առանձին տեղամասերում, ուր շփումը իսկապես որ ավելորդ է ու վնասակար։

— Իսկ ինչո՞ւ դու այդ առաջ չէիր ասում,— վիրավորական ասաց Հրաչիկը։

— Իսկ ինչ ասեի, երբ «դեֆրիկցիոնը» ցանկանում էիր պատրաստել միայն ինքդ... ուզում էիր միայն քեզ գովեին...

Հրաչիկը ոչինչ չպատասխանեց։ Նա դժվարությամբ թերթում էր ֆիզիկայի դասագիրքը։

Ահա «Շփում» գլուխը։ Նրա հայացքը սկսեց վազել վերջին տողերի վրայով։ Հանկարծ նա բարկանալով, մի կողմ նետեց դասագիրքը։ Բայց այն սահելով, նորից մոտեցավ դժբախտ գյուտարարին։

Դրությունը թվում՝ էր անելանելի...

Հանկարծ Հայկն ուրախությունից բացագանչեց.

— Ես գտա... Քիչ հետո ապարատը ինքն իրեն կանջատվի։ Հասկանո՞ւմ ես... „Z“—W-ն կհասնի մոտակա էլեկտրական ենթակայանին։ Այնտեղ շփումը կվերանա։ Անջատիչները կսահեն ու կանջատեն էլեկտրական հոսանքը...

Հրաչիկը ծանր հոգոց հանեց ու երախտապարտ հայացքով նայեց ընկերոջը։

* * *

Շատ չանցած, ապարատը կանգ առավ։ Ազդանշանային լամպերը դադարեցին թարթելուց։ Շրջապա-



[1]) Հակաշփում.

տի առարկաները անմիջապես վերականգնեցին իրենց նախկին հատկությունները։

Հրաչիկը վախվխելով վեր կացավ, սրբեց ճակատի քրտինքը, մոտեցավ «դեֆրիկցիոնին», անջատեց այն էլեկտրական ցանցից ու նայեց Հայկին։

Պատանի գյուտարարի հայացքը այնքան պերճախոս էր, որ Հայկը դրա մեջ զգաց, թե՛ զղջում և թե՛ հիմար սովորությունները ուղղելու հաստատ որոշում։

Այդ ամենը Հրաչիկը ամփոփեց միայն մի բառով։ Նա նորից ծանր շնչեց ու ասաց.

—Վերջ...

# ՄՀԵՐԻ ՈՒՂՏԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մհերի հայրը
Երբ գնաց խանութ,
Տղայի համար
Գնեց փայտե ուղտ։



Նա շատ էր սիրում
Իր փայտե ուղտին,
Չորս անիվ ուներ
Ոտքերի տակին։

Մի օր հայրիկը
Մհերին առած,
Զրույց անելով
Զոոպարկ գնաց։

Առաջին անգամ
Մհերը փոքրիկ,
Տեսնում էր՝ փիղ, արջ,
Աղվես ու կապիկ։

Դիտում էր նրանց
Ու պոկ չէր գալիս.
Հայրիկին հաճախ
Հարցեր էր տալիս։

—Այն ի՞նչ գազան է,
Հայրիկ, ապա տես.

—Ուղտ է, Մհեր ջան,
Միթե չգիտես։

—Ո՛չ, ո՛չ, ուղտ չի սա,—
Ասաց Մհերը,—
Բա ո՞ւր են նրա
Չորս անիվները...



## ՊԱՊԻԿՆ ԱԿՆՈՑՆԵՐՈՎ

Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

— Է՜խ, ափսոս, լավ չնայեցի, թե ում նվիրեցի այն նկարազարդ, փոքրիկ գիրքը,— ասաց Սարդար պապիկը առավոտյան արթնանալով,— Կարինեի՞ն, թե մի ուրիշ աղջկա:

— Նկարազա՞րդ: Ես այնպես շատ եմ սիրում նկարներով գիրք: Է՜հ, պապի՜կ, ինչո՞ւ լավ չես նայել,— հանդիմանեց Կարինեն:

Կեսօրին, երբ պապիկն ու Կարինեն զբոսանքից տուն վերադարձան, պապիկը դրեց ակնոցները, պառկեց բազմոցի վրա ու սկսեց թերթ կարդալ: Կարդաց, կարդաց, մեկ էլ քնեց: Թերթն ընկավ հատակին, իսկ ինքն էլ՝ Սարդար պապիկը, սկսեց խռմփալ:

— Մայրիկ, նայի՜ր, պապիկն ակնոցներով է քնել,— բացագանչեց Կարինեն ու ձայն տվեց ծերունուն:— Պապի՜կ, ա՜յ պապիկ:

Պապն աչքերը բացեց:

— Պապիկ, դու ակնոցներով ես քնում, որ ինձ երազում լա՞վ տեսնես: Այո՞:

## ՍՅՈՒԶԻԿԻ ՍԱԼԱԹԸ

- Սյուզիկ, բալիկս, լվացվիր, եկ ճաշենք:

—Ճաշե՞լ: Ես ճաշել եմ արդեն, մայրի՜կ: Ես կուշտ եմ:

— Ճաշե՞լ ես: Իսկ ի՞նչ ես կերել:

— Սալաթ:

— Սալա՞թ,— զարմացավ մայրիկը,— էդ որտե՞ղ:

— Դե լսիր, պատմեմ: Տատիկը ինձ հյուրասիրեց պոմիդորով, մորաքույր Վարսիկը՝ վարունգով, իսկ տուն գալուն պես՝ կերա կանաչ սոխ: Ասա տեսնեմ, չեղա՞վ սալաթ:

## ԱՅԴ ԻՆՉՊԵ՞Ս ԵՂԱՎ

— Ես Պարույրից երկու անգամ մեծ եմ,—պարծենում էր Վասակը, երբ ինքը տասներկու տարեկան էր, Պարույրը՝ վեց:

Իսկ մի տարի հետո, երբ լրացավ Պարույրի յոթ տարին, Վասակը զարմանքից շվարել էր:

— Այդ ինչպե՞ս եղավ: Չէ՞ որ իմ տասնչորս տարին պետք է լրանար, ոչ թե տասներեքը: Մի՞թե Պարույրը տարիքով պետք է անցնի ինձանից:

## ՏԱՏԻԿՍ ԻՆՁ ՆՄԱՆ Է

— Տատի՜կ, դու ինձ շատ նման ես,— ասաց Գայանեն:— Տե՜ս, իմ աչքերը սև են, քոնն էլ, իմ մազերը գանգուր են, քոնն էլ, իմ առաջին երկու ատամն էլ է ընկած, քոնն էլ: Ճի՞շտ է:

# ԽՈՍՈՂ ՔԱՐԸ



Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Օգոստոսյան բարկ արևը երկինքը բոցավառել էր մայրամուտի նարնջագույն ցոլքերով։ Օձաձորն իջնող քարքարոտ արահետով գնում էին երեք պատանի։ Ձորաբերանին նրանք կանգ առան։ Ցածում երևում էին հին գյուղի ավերակները։ Մի քիչ կանգնելուց հետո պատանիները դուրս եկան արահետից և մտան գերեզմանատուն։

Ուշադրությամբ շուրջը նայելուց հետո նրանք մոտեցան առաջին գերեզմանաքարին։ Ապա երկյուղածությամբ մաքրեցին քարի վրայի մամուռը, զննեցին չորս կողմից և շարունակեցին առաջ գնալ։ Հանկարծ նրանցից մեկը փռս ընկած մի գերեզմանաքարի վրա ինչ-որ բան նկատեց և ձեռքով նշան արեց, որ մյուսներն էլ մոտենան։ Հատ-հատ արտասանելով յուրաքանչյուր տառը, նրանք փորձեցին կարդալ տապանագիրը։ Կարդացին երկրորդ անգամ, նորից կարդացին, բայց ոչինչ չհասկացան։

Շիրակը գրպանից հանեց ծոցատետրն ու մատիտը և սկսեց արտագրել քարի վրայի մակագրությունը։ Մեկ էլ Ներսիկը գլուխը վեր բարձրացրեց և ի՜նչ... Իրենցից քիչ հեռու, քարի վրա նստած էր ալեհեր, երկար մորուքով մի ծերունի։ Ներսիկի աչքերն ասես միանգամից մթնեցին, սարսուռ անցավ նրա մարմնով։ Բահը, որով նա շիրմաթմբերին բուսած փշերն էր կտրտում, սահեց ձեռքից և, դիպչելով Հակոբի ուսին, ցած ընկավ։

— Կամաց, գլուխս պիտի ջարդեիր,—դժգոհեց Հակոբը՝ առանց վերև նայելու։

— Տղերք, էն ի՜նչ է,—հազիվ լսելի ձայնով շշընջաց Ներսիկը։

Շիրակն ու Հակոբը վեր թռան և նայեցին ընկերոջ ցույց տված կողմը։

— Մարդ է, ինչ է։

— Ես էլ կարծեցի, թե...

— Ի՞նչ, կարծեցիր, թե մեռել է կենդանացե՞լ,— նորից խոսեց Շիրակը,—վախից ձեր հարևանին էլ չես ճանաչում. Թորոս պապն է, մեղվանոցի պահակը, չե՞ս տեսնում։ Միշտ որ վախկոտ Նազար ես, հա՛։

Ծերունին նկատեց, որ տղաներն իրեն են նայում, ոտքի կանգնելով առաջ եկավ։

— Էդ ի՞նչ եք անում,—դեռ չմոտեցած հարցրեց նա։

— Հեչ, Թորոս պապ, հենց էնպես,— կմկմաց Շիրակը։

— Հեչով էլ բա՞ն լինի, դե ասեք, տեսնեմ ի՞նչ եք կորցրել էստեղ,— ասաց ծերունին։

Շիրակը մի քանի խոսքով հայտնեց իրենց այդտեղ գալու նպատակը։

— Խոսք չկա, լավ բան եք մտածել, — ծխամորճը վառելով խորհրդավոր տոնով սկսեց նա,— դե որ էդ տեսակ նպատակ ունեք, արեք ձեզ մի քար ցույց տամ։ Ես որ գյուղխորհրդի նախագահ էի...

Տղաները գիտեին, որ ինչի մասին էլ խոսեին Թորոս պապի հետ, նա պիտի հիշեցներ, որ իրենց գյուղխորհրդի առաջին նախագահը ինքն է եղել ու պիտի սկսեր այդ մասին խոսել, զանազան հուշեր պատմել։ Դրա համար էլ Շիրակը չկարողացավ համբերել և ընդհատեց նրան։

—Թորոս պապ, չգիտե՞ս ինչ է գրված էդ քարին։

— Ես որ գյուղխորհրդի նախագահ էի,—առանց Շիրակի հարցին պատասխանելու՝ կրկնեց ծերունին։

Տղաները մռայլվեցին. «էլի սկսեց», մտածում էր նրանցից յուրաքանչյուրը։ Բայց հակառակ իր սովորության, նա այս անգամ կարճ կապեց։

— Շրջանից ու քաղաքից եկող մարդիկ առաջ էդ քարի մոտ էին գնում։ Դե, արեք, շուտ ցույց տամ, որ գնամ. մեղվանոցում մարդ չկա։

Թորոս պապի ետևից պատանիները գնացին դեպի գերեզմանատան խորքը և կանգ առան մի մեծ քարի մոտ։ Այդ քարի մի կողմը ամբողջովին ծածկըված էր տառերով, որոնք հողմի ու անձրևի տակ այնքան էին մաշվել, որ հազիվ էին նշմարվում։

— Էս քարերը խոսող քարեր են, նրանց լեզուն հասկացող մարդ է պետք, դուք գրաբար որտեղի՞ց գիտեք, ա՛յ էրեխեք։ Համ էլ էդ գործից բան դուրս չի գա, էն էլ երեք հոգով։

— Ախր, պապ ջան,—ճակատին թափված երկար մազերի փունջը ետ դարձնելով, ասաց Շիրակը,— ուժ ասացինք ծիծաղեց մեզ վրա, մենք էլ որոշեցինք երեքով սկսել։ Ծիծաղողներից մեկն էլ քո թոռն էր։

— Ո՛վ, սարսաղ Գարե՞նը. էն հի՜չ, նրան տես՝ աղջկա պես իր վրա-գլխին նայի ու սեմուչկա չըրթելով պարապ-սարապ ման գա։ Բա ձեր դիրեկտորը ի՞նչ է անում։

— Նրան դեռ չենք ասել,— պատասխանեց Շիրակը։

— Էդ չեղավ, նա ձեզ շատ կօգնի, լավ էլ գրաբար գիտի։ Էն օրը նրանց տանն էի, Եղիշե պատմիչի գիրքը ջրի պես կարդում էր։ Միայն նա կհասկանա էս քարերի լեզուն,— ասաց Թորոս պապը և գնաց դեպի մեղվանոցը, որը հեռու չէր։

Դանդաղորեն իջնում էր իրիկնային մթնշաղը։ Համայնական դաշտերի վրա տարածվել էին ռադիոբարձրախոսի քաղցր հնչյունները։ Գյուղի էլեկտրական պայծառ լույսերը ժպտում ու տուն էին կանչում երազանքներով տարված պատանիներին։

Նրանք ուղիղ գնացին դպրոցի դիրեկտորի տունը։

— Հրաշալի մտահղացում է, տղաներ,— իր աշակերտներից ավելի ոգևորվեց Շավարշ Պապանյանը։— Դուք պատկերացնո՞ւմ եք, ձեր օրինակին կհետևեն մյուս գյուղերի աշակերտները։

— Թույլ կտա՞ն, որ մենք ծածկենք վանքը և պեղումներ կատարենք նրա շրջակայքում ու օձաձորում,— հարցրեց Հակոբը։

— Իհարկե, թույլ կտան, չէ՞ որ այստեղ գիտնականները վաղուց են պեղումներ կատարել վերջացրել։ Ես այսօր գյուղսովետից թույլտվություն կվերցնեմ։ Վաղը երեկոյան դպրոցում կհավաքենք գյուղում մնացած աշակերտներին, կխոսենք այդ մասին և մյուս օրվանից կանցնենք գործի։

* * *

Երբ Շիրակի գլխում ծագեց գյուղական թանգարան ստեղծելու միտքը, նա այդ մասին առաջինը հայտնեց Հակոբին ու Ներսիկին։

Ինչպես միշտ, այս անգամ էլ Ներսիկը միանգամից ոգևորվեց, իսկ Հակոբը, իր սովորության համաձայն, անմիջապես պատասխան չտվեց։ Նրանք խոսելով գնացին դեպի Ներսիկենց դռան առաջ կիտված գերանները, որը թաղի երեխաների մշտական հավաքատեղին էր։ Երբ իջնում էր երեկոն, նրանք գալիս էին այստեղ, հեքիաթներ պատմում, պահմտոցի խաղում...

Նստելով գերանին, Շիրակն սկսեց գործնական եղանակով բացատրել ընկերներին, որ ամենից առաջ պետք է իմանալ, թե երբ է հիմնադրվել իրենց գյուղը։

— Լավ,— նրան ընդհատեց Հակոբը,— ասենք թե իմացանք մեր գյուղի հիմնադրման թվականը և մի քանի հատ էլ հին կճուճ գտանք, հետո՞, խոմ դրանով թանգարան չի ստեղծվի։ Բայց այդ, ես չգիտեմ, թե ինչ նպատակ ունի գյուղական թանգարան հիմնելը։

Շիրակն ասես դրան էր սպասում։ Նա սկսեց թվարկել այն ամենը, ինչ իր կարծիքով, պետք է տեղ գտնեին թանգարանում։ Արորի ու մանգաղի կողքին փակցված կլինեն կոլտնտեսային դաշտերում հոնդացող տրակտորների ու կոմբայնների լուսանկարները։ Նավթի ժանգոտված ճրագի մոտ կվառվի էլեկտրական լամպը։ Հին գյուղի փլատակների լուսանկարի կողքին կախված կլինի նոր գյուղի գեղատեսիլ պատկերը։ Թանգարանում կլինեն նաև հին տարազներ, դրամներ, գրքեր...

Շիրակը խոսում էր ոգևորված, իսկ Հակոբն ու Ներսիկը կլանված լսում էին նրան, և նրանց աչքերի առջև կինոժապավենի նման անցնում էին թանգարանային էքսպոնատները։

Շիրակը նայեց Հակոբին։ Մթության մեջ ասես նա տեսավ ընկերոջ աչքերի փայլը։ Շիրակին դուր էր գալիս Հակոբի լռակյաց բնավորությունը, որով նա շատ էր տարբերվում դասարանի մյուս տղաներից։ Բայց երբ որևէ հարցի մասին Շիրակն ուզում էր իմանալ Հակոբի կարծիքը, չէր բավարարվում նրա ժլատ խոսքերով և նայում էր նրա մեծ ու սև աչքերին։

— Բայց որտե՞ղ է լինելու թանգարանը։

Հակոբի հարցին Շիրակը պատասխան չգտավ։

— Պիոներական սենյակում, էլ որտեղ,— ասաց Ներսիկը։

Հակոբն առաջարկեց դպրոցի բակում, արհեստանոցի մոտ թանգարանի համար մի փոքրիկ տնակ կառուցել։

— Ո՛չ, տղանե՛ր,— խոսեց Շիրակը,— ավելի լավ կլինի ծածկենք վանքի պատերը և դարձնենք թանգարան։ Թանգարանի շենքն էլ պետք է հին լինի, որ ավելի հետաքրքիր դառնա։

Այդ առաջարկը դուր եկավ տղաներին։

Նրանցից բաժանվելուց հետո, Շիրակը տուն գնաց։ Ակումբի մոտ նա տեսավ Գարենին ու Ղևոնդին։ Պատի տակ կանգնած՝ նրանք արևածաղիկ էին ուտում և բարձր ձայնով քրքջում։ Շիրակը մոտեցավ նրանց և հայտնեց իր նախաձեռնության մասին։

— Թանգարան սարքողիս տեսեք,— խայթող հեգնանքով ասաց Գարենը։

Ո՞վ է լսել, որ պիոներները թանգարան ստեղծեն,— ավելացրեց Ղևոնդը։

Շիրակի գլխին ասես սառը ջուր լցրին։ Նա անխոս հեռացավ իր դասընկերներից։

— Պա՜հ, բանաստեղծ դարձավ, հիմա էլ ուզում է գիտնական դառնալ,— Շիրակի ականջին հասավ Գարենի նոր վիրավորանքը։

Անցած տարվանից Գարենը մի առանձին ատելությամբ էր լցված Շիրակի նկատմամբ։ Դա սկսվել էր այն օրվանից, երբ ջոկատի խորհրդի ընտրության ժամանակ Գարենի փոխարեն նախագահ էին ընտրել Շիրակին։

Տուն գնալիս Շիրակը վճռեց թանգարանի մասին առայժմ ոչ ոքի չասել։ Մյուս օրը նա Հակոբի ու Ներսիկի հետ գնաց գերեզմանատուն։

* * *

Նոր գյուղի հարավային ծայրում, որպես անցյալի միակ հուշարձան, կանգուն էին մնացել հինավուրց վանքի չորս պատերը։

Ժողովի հաջորդ օրը, վաղ առավոտից այնտեղ ղնգացին բահերն ու քլունգները։ Վիթխարի սյուներ կազմելով երկինք խոյացավ ավերակների դարավոր փոշին։

Մի քանի օրվա ընթացքում պիոներները մաքրեցին շրջակայքը։ Կոլտնտեսության վարչությունից ուղարկած երկու որմնադիրները պիոներների օգնությամբ նոր պատեր շարեցին։ Ստացվեց երեք սենյակ։ Հետո նրանք կարգի բերեցին հին պատերի փուլ եկած տեղերը և ներսից կրաջրով սպիտակեցրին։ Ապա կոլտնտեսության տված գերաններով ու տախտակներով ծածկեցին շենքը։

— Պիոներների համար մենք ոչինչ չենք խնայի,— դիրեկտորին ասել էին կոլտնտեսության և գյուղսովետի նախագահները,— միայն թե էդ լավ գործը կիսատ չթողնեն։

Երկու շաբաթ հետո թանգարանի շենքը պատրաստ էր։ Սկսվեց էքսպոնատների հավաքումը։ Օձաձորը պեղելիս ավերակների միջից դուրս եկան երկու նետ, մեկ վահան, մի քանի կճուճ և զանազան այլ իրեր։ Թանգարանի ստեղծումն այնպիսի հետաքրքրություն էր առաջացրել գյուղում, որ ամեն մեկը ցանկանում էր մի բան նվիրել։ Հակոբի տատը նվիրեց հին ձևի տարազներ, երկու դեղնած ու մաշված գիրք։ Նազիկի հայրը ուղարկեց իր ժանգոտած մանգաղն ու գերանդին։

Անցան օրեր։ Սկսվեց ուսումնական տարին, բայց թանգարանը պատրաստ չէր բացման։ Մի օր, դասերից հետո Հակոբը, Ներսիկը, Գոհարը և Շուշիկը դասավորում էին հին իրերը, Նազիկն ու Արմենակը զբաղված էին ծաղիկների կոլեկցիաներով, Շիրակն ու Անահիտը պատրաստում էին «Խոսում են շիրմաքարերը» բաժնի էքսպոնատները։ Նրանք ապակե շրջանակների մեջ տեղավորում էին գյուղի պատմությանը վերաբերող տապանագրերի լուսանկարները, կողքին դնելով գրաբարից կատարված թարգմանությունը, որ արել էր դիրեկտոր Պապանյանը։

Հանկարծ հևասպառ ներս ընկավ Ղևոնդը։

— Շուտ արեք, բահերը վերցրեք գնանք։ Մուղդոյի ձորում բան եմ գտել, մենակ չկարողացա հանել։

Թանգարանում տեսնելով Ղևոնդին, Շիրակի դեմքին ուրախության ժպիտ փայլեց։ Ուրեմն նա դուրս էր եկել Գարենի ազդեցության տակից։ Բոլորը թողեցին գործը և, բահերը վերցնելով, Ղևոնդի հետ դուրս թռան։ Հասնելով ձորակը, Ղևոնդը նրանց տարավ մի քարի մոտ և ցույց տվեց հողի միջից դուրս ցցված մի բան, որը շատ էր նման կաթսայի կանթի։ Սկսեցին փորել հողը։ Երբ բավական փորել էին, տեսան որ կաթսա է։ Մի քանի հոգով փորձեցին հանել՝ չկարողացան, շատ ծանր էր.

— Տղերք, մեջը լիքը ոսկի կլինի, էլի փորենք,— ասում էր քրտինքի մեջ կորած Ղևոնդը և եռանդով բահը խրում հողի մեջ։

Վերջապես նրանց հաջողվեց դուրս բերել ծռմըռված ու ժանգոտած մի մեծ կաթսա, որի վրա անծանոթ տառեր կային։

— Ով գիտի, քանի հազար տարվա կաթսա է, այ թե էքսպոնատ է, հա՛,— ասում էին ներկա գտնըվողները և հրճվում։

Երբ բաց արին կափարիչը, տեսան, որ կաթսայի մեջ սովորական քարեր կային։

— Տարօրինակ է,— խորհրդավոր կերպով ասաց Հակոբը և սկսեց քարերը դուրս թափել,— ինչո՞ւ են մեջը քար լցրել։

Ղևոնդը շալակեց կաթսան, և պիոներների ուրախ խումբը դուրս եկավ Մուղդոյի ձորից։ Նրանք ուղիղ գնացին թանգարան և կաթսան դրին ամենաաչքի ընկնող տեղում։

Մյուս օրը հանկարծ թանգարան մտավ Ղևոնդի տատը։ Մաշված ցախավելը ձեռքին, հայհոյելով ու անիծելով, նա մոտեցավ կաթսային և ցած իջեցրեց պատվանդանից։ Բոլորը զարմացած իրար էին նայում։

— Էդ ինչ ես անում, Շուշան տատիկ,— առաջ գալով հարցրեց Շիրակը։

Պատասխանի փոխարեն ցախավելի մի հարված իջավ նրա գլխին։ Շիրակը ետ փախավ և նայեց Ղևոնդի կողմը։ Սա գլուխը կախել ու ոչ ոքի չէր նայում։ Շուշան տատը նոր միայն նկատեց իր թոռանը և հարձակվեց նրա վրա։

— Դե, ոնց որ գողացել բերել ես, էնպես էլ տուն տար,— ցախավելի մի քանի հարված հասցնելուց հետո, ասաց նա։

Ղևոնդը շալակեց կաթսան ու տատի հետ դուրս եկավ թանգարանից։ Պարզվեց, որ Ղևոնդը կռվել էր Գարենի հետ և իրենց խոհանոցից գաղտնի դուրս էր բերել ջուր տաքացնելու կաթսան, տարել ձորը, քար լցրել մեջը և հորել այնտեղ։ Այդ մասին իմացել էր Գարենը և հայտնել Ղևոնդի տատիկին։

— Իսկ ինչո՞ւ էիր քար լցրել և հորել ձորում,— մի քիչ կշտամբելուց հետո հարցրեց Շիրակը։

— Որպեսզի ավելի հետաքրքիր լիներ,— ամոթից գլուխը կախելով պատասխանեց Ղևոնդը։

Երեկոյան կողմ ձիասայլով թանգարան եկավ Թորոս պապը։ Իր հետ բերել էր խոստացած հին արորը, որով շատ տարիներ առաջ վար էր արել։ Երբ Թորոս պապը թանգարան մտավ, Շիրակը պատին էր

փակցնում քաջ Մուղոյի նկարը։ Մուղոն ծառայել էր Կարմիր բանակում, հետո մասնակցել էր Մայիսյան ապստամբությանը և դաշնակների ձեռքով սպանվել այն ձորում, որ կոչվում է նրա անունով։

— Ամոթ չլինի հարցնել,—ինչո՞ւ իմ պատկերն էլ չեք կախում էդ պատից,—կես լուրջ, կես կատակ ասաց Թորոս պապը։—Մեր գեղի առաջին նախագահը ես եմ եղել. ձեր դպրոցը ես եմ բացել .. —Ու նա սկսեց թվել, իրեն վերագրելով այն բոլոր գործերը, որ կատարվել էին տասներկու տարվա ընթացքում նրա նախագահ եղած ժամանակ։

Ներկա գտնվողները լսում էին ծերունուն և հազիվ զսպում ծիծաղը։ Իսկ Շիրակը մտածում էր, թե ինչու չպետք է փակցնել նաև Թորոս պապի նկարը, ինչու այդ մասին չէին մտածել։ Պետք է փակցնել նաև առաջավոր կոլտնտեսականների լուսանկարները։ Հապա քաղաքացիական կռիվների և Հայրենական պատերազմի մասնակիցների նկարները. Վատ չի լինի թանգարանում ունենալ նաև գյուղի ամենատարիքավոր մարդկանց լուսանկարները։ Դեռ ինչքա՞ն բան կա անելու...

— Պապ ջան, քո նկարն էլ անպայման մեր թանգարանում կլինի,—ասաց Շիրակը և բռնելով նրա ձեռքից, առաջ տարավ՝ ցույց տալու եղած էքսպոնատները։

* * *

Եկավ թանգարանի բացման օրը։ Հավաքվել էին գյուղի աշակերտներն ու կոլտնտեսականները։ Երբ միտինգը վերջացավ, Շիրակը մկրատով կտրեց մուտքին կապած սպիտակ ժապավենը, և այցելուները



մատն թանգարան։ Առաջին սրահում գրված էքսպոնատները մարդկանց առաջ բաց էին անում հին գյուղի մռայլ պատկերը։ Երկրորդ սենյակը նվիրված էր նոր գյուղին, իսկ մյուս ընդարձակ սրահը ցուցահանդեսն էր, որտեղ կային ծաղիկների, խոտաբույսերի, հացահատիկային ու բանջարանոցային մշակույթների հարուստ կոլեկցիաներ։

— Էս հո իսկական թանգարան է,— ուրախ ժպիտը դեմքին ասաց Թորոս պապը և իր մոտ կանչելով Շիրակին, առաջարկեց կարդալ տապանագիրը։

Շիրակը ամենից առաջ կարդաց Թորոս պապի ցույց տված տապանագիրը։

«Աստ հանգչին Կիրակոս և Բարթուղ եղբայրները, որոնք ի հիշատակ իրենց հոր՝ երանելի Նահապետի, շինեցին մի վանք և հիմք դրեցին Ցամաքաձոր գյուղին 1126—28 թ. թ. ...»։

Երբ նա վերջացրեց, Թորոս պապն ասաց.

— Շատ ապրեք, բալեք ջան, դուք խոսեցրիք անլեզու քարերին և չթողիք, որ մեր գեղի պատմությունը կորչի։




Կ. ՉՈՒԿՈՎՍԿԻ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

1.

Բժիշկ է նա բարեսիրտ,
Եվ անունը՝ Այբոլիտ։
Ա՛յ, նստել է ծառի տակ,
Որ ձեզ բուժի շարունակ։
Դե՛, բուժվելու եկեք դուք,
Գայլ ու աղվես, որդ ու ձուկ,
Կոկորդիլոս ու քոթոթ,
Եկե՛ք, բուժվեք նրա մոտ։

2.

Մի աղվես եկավ Այբոլիտի մոտ՝
«Ո՜ւֆ, խայթել է ինձ պիծակն անամոթ»։
Ու մռմռալով մի շնիկ եկավ՝
«Քիթս կտցել է մի պնդերես հավ»։
Ապա մոտեցավ մի մայր նապաստակ՝
«Ա՜խ, շլդիկս ընկավ տրամվայի տակ.
Իմ խեղճ բալիկը գնաց ու ընկավ
տրամվայի տակ։
Անկյունից հանկարծ տրամվայն եկավ,
Զույգ թաթիկները կտրեց ու տարավ։
Հիմա պառկել է և՛ կաղ, և՛ հիվանդ
Մանկիկն իմ անբախտ»։
Այբոլիտն ասաց. «Բան չկա, տիկի՛ն,
Գնա այստեղ բեր քո կաղ ճուտիկին.
Ես նոր թաթիկներ կկարեմ նրան,
Որ վազվզի նա առաջվա նման»...
Եվ մայր-շլդիկը գնաց ու կրկին
Ետ դարձավ՝ հիվանդ բալիկը գրկին։
Բժիշկը կարեց տոտիկներ նոր-նոր,

Ցատկեց փոքրիկը խենթ ու բախտավոր։
Եվ մայր շլդիկը իր բալիկի հետ
Գնաց պարելու դաշտում սիզավետ։
Նա կանչում ուրախ ու դոփում էր պինդ.
«Ապրե՛ս, շա՜տ ապրես, բժիշկ Այբոլիտ...»։

3.



Մեկ էլ եկավ մի շնագայլ
Հեծած նժույգ արագաքայլ.

«Հեռագիր եմ բերել մի նոր
Գետաձիուց այն հեռավոր...»։
«Բարի բժիշկ,— գրում էր նա,
Աֆրիկական այն գետաձին,—
Շտապեցեք մեզ մոտ հիմա,
Որ բուժեք մեր բալիկներին...»
Ու բժիշկը տագնապալի
Հարցրեց բանբեր շնագայլին.
«Ի՞նչ եք ասում, ի՞նչ, իսկապե՞ս,
Հիվանդացան ձերոնք այդպես...»։
«Հա՛, բժիշկ ջան, էլ մի ասի,
Ճանկն են ընկել կապույտ հազի,
Դիֆտերիտի, խոլերայի,
Բրոնխիտի, մալարիայի...
Շտապեցեք երկիրը մեր,
Սպասում ենք ձեզ անհամբեր»։
«Դե լավ, դե լավ,— բժիշկն ասաց,—
Կգամ, որ շուտ բուժեմ նրանց։
Իսկ որտե՞ղ եք դուք բնակվում,
Լեռան լանջի՞ն, թե՞ ճահճուտում»։
«Մենք ապրում ենք Զանզիբարում,
Սահարայում, Կալահարում,
Ֆերնանդո Պո գագաթի տակ,
Գիմպոպոն է որտեղ շրջում
Լիմպոպոյի ափերին տաք...»։

4.

Եվ Այբոլիտը վազեց սրընթաց,
Դաշտով, անտառով գնաց, հա գնաց։
Եվ նա իր մտքում լոկ այս էր կրկնում.
— Լիմպոպո, Լիմպոպո, Լիմպոպո...
Ծեծեց ձյունը պաղ, քշեց քուքը խենթ,
Ասին. «Այբոլիտ, դարձիր, դարձիր ետ»։
Այբոլիտն ընկավ ձյունի մեջ սառած.
«Ա՛խ, էլ չեմ կարող ես գնալ առաջ...»։
Բայց մեկ էլ, ըհը՛, տեսնելով նրան,
Երկու բրդոտ գայլ թփերից ելան։
«Այբոլիտ, — ասին,— նստիր մեր ուսին,
Մենք քեզ կտանենք, ուր սիրտդ կուզի»։
Բժիշկը նստեց, սլացավ իսկույն՝
Միմիայն մի բառ կրկնելով մտքում.
«Լիմպոպո, Լիմպոպո, Լիմպոպո...»։



5.

Շատ գնաց. թե քիչ. մեկ էլ նա հանկարծ
Փոթորկոտ մի ծով տեսավ իր առաջ,
Եվ ալիքները, երախի նման,
Թվաց, թե իրեն կուլ կտան հիմա։
«Թե խեղդվեմ, ավա՜ղ,
Ալիքներում պաղ.
Ի՞նչ կպատահի հիվանդներիս խեղճ
Այն հեռո՜ւ, հեռո՜ւ անտառների մեջ...»։
Բայց ահա մի կետ լողալով եկավ.
«Այբոլիտ, — ասաց,— նստիր իմ ուսին.
Հենց հիմա ես քեզ, ինչպես շոգենավ,
Կտանեմ այնտեղ, ուր սիրտդ կուզի»։
Բժիշկը կետին հեծավ և իսկույն
Սլացավ՝ մի բառ կրկնելով մտքում.
«Լիմպոպո, Լիմպոպո, Լիմպոպո...»։



6.

Դեմ ելան ահա ապառաժ ու լեռ,
Եվ մագլցելով բարձրացավ նա վեր։
Բայց քանի գնաց, նա քանի գնաց.
Այնքան բարձրացան լեռները իր դիմաց։
«Օ՜, բախտ իմ անգութ,
Թե ընկնեմ անդունդ,
Ի՞նչ կպատահի հիվանդներիս խեղճ
Այն հեռո՜ւ, հեռո՜ւ անտառների մեջ...»։
Բայց հենց այդ պահին ժայռերից հանկարծ
Երկու քաջ արծիվ իջան սրընթաց։
«Այբոլիտ, — ասին,— նստիր մեր ուսին.
Կտանենք այնտեղ, ուր սիրտդ կուզի»։
Այբոլիտն արծվին նստեց և իսկույն
Սլացավ՝ մի բառ կրկնելով մտքում.
«Լիմպոպո, Լիմպոպո, Լիմպոպո...»։

7.

Իսկ հեռավոր Աֆրիկայում,
Դաշտավայրում Լիմպոպո,
Լաց է լինում, բախտն է սգում
Կապիկ-պապիկ Գիմպոպոն։
Նա հեռավոր Աֆրիկայում,
Նստած հովում արմավի,
Հայացքն անվերջ ծովին հառում,

Սպասում է մի նավի.
«Ա՜խ, բժիշկը դեռ չկա,
Բա ե՞րբ կգա, ե՞րբ կգա...»:
Բեգեմոտի ձագուկները
Փորին դրած ոտիկները՝
Նվնվում են, ճչում, լալիս
Սարսափելի փորացավից:
Իսկ սրանք էլ գետինն ընկել,
Ծվծվում են խոզուկի պես.
Վա՜յ վա՜յ, վա՜յ վա՜յ, ջայլամիկներ,
Էս ի՞նչ բախտ էր վիճակվել մեզ...:
Ծաղիկ ունեն և դիֆտերիտ,
Եվ կարմրուկ, և բրոնխիտ.
Համ գլխացավ ունեն նրանք,
Համ բկացավ ունեն նրանք...
Զառանցում են ընկած այդպես...
— Ախր բժշկին ինչո՞ւ չեկավ,
Նա մեզ թողեց տանջանքի մեջ.
— Ա՜խ, մեր բժշկին ինչո՞ւ չեկավ...
Ու վեցերով լցված համակ՝
Էն մեծատամ շնաձուկը,
Մեծափերանի շնաձուկը,
Տարածվել է արևի տակ:
Ձագուկները շուրջը նրա
Զորանում են ոտի վրա.
Երեք շաբաթ արդեն անցավ
Ունեն տասիկ ատամնացավ:
Եվ ծղրիդի ոտն էլ ուռ է.
Դուրս է ելել խեղճի թևը:
Էլ չի երգում, չի թռչկոտում,
Լալիս է նա տխուր-տրտում
Ու մրթմրթում.
«Ա՜խ, բժիշկը ո՞ւր է, չկա,
Բա ե՞րբ կգա, նա ե՞րբ կգա...»:

8

Բայց տեսե՜ք, տեսե՜ք, ինչ-որ մի թռչուն
Երկնքով հանդարտ այս կողմ է թռչում:
Իսկ Այբոլիտը բազմել է մեջքին,
Գլխարկը ճոճում, գոչում է ուժգին.
«Ողջո՜ւյն, Աֆրի՜կա, երկի՛ր դու անգին»:
Եվ ցատկոտում են մանկիկները ուրախ.
«Եկա՜վ, ջա՜ն, եկա՜վ, ուռա՜, հե՜յ, ուռա՜...»:

Թռչունը հպարտ ճախրում է վերում,
Հետո բժշկին ներքև է բերում,
Նա մոտ է վազում բեգեմոտներին,
Թփթփացնում է նրանց փորերին.
Եվ շտապ-շտապ
Ծոցերն է խրում մի-մի ջերմաչափ,
Իսկ մի քիչ հետո
Կանֆետ է տալիս բոլորին հերթով...
Վազում բարկացկոտ
Կորյուններին մոտ,
Գոգլի է տանում
Ու պատիվ անում
Այն սուսիկ-փուսիկ
Ուղտերին կուզիկ...
Յոթ օր, յոթ գիշեր այսպես անընդհատ,
Սոված ու ծարավ, հոգնած ու անքուն,
Գազանիկներին հյուծված ու հիվանդ,
Կեղտակրում էր նա, բուժում, սրսկում:

9

Ահա բուժեց նա նրանց,
Լիմպոպո՜,
Բուժեց հիվանդ այդ մանկանց,
Լիմպոպո՜:
Նրանք ուրախ գնացին,
Լիմպոպո՜,
Պար բռնեցին միասին,
Լիմպոպո՜:
Շնաձուկը. տե՜ս, մի տես,
Աչքով է անում ասես.
Հռհռում է, քրքջում,
Ջրի երեսն է թռչում:
Բեգեմոտի ձուտերը
Փորին դրած ոտերը՝
Ծիծաղում են միասին,
Դոփում ափի ավազին...
Ահա Պոպոն ու Գիպպոն,
Ահա Գիպպոն ու Պոպոն,
Գետաձին է գալիս, տե՜ս,
Զանզիբարից արևկեզ,
Կլիմանջա՜րո է գալիս,
Երգ է ասում, ծափ տալիս.
«Փա՜ռք բժշկին մեր բարի,
Բժիշկներին աշխարհի...»:

Թարգմ. Հ. ՀԱՐՑԱՆ



## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Ցուրտ է արդեն. ու դաշտերին
Իջել է մեգ, թանձր մշուշ,
Ձյուն է իջել մեր սարերին
Նոյեմբերն է, աշուն է ուշ։

Չոր խոտերից ու թփերից,
Ցողիկները ժպտում են պաղ,
Շուտո՜վ, շուտո՜վ թուխ ամպերից
Փաթիլները կիջնեն խաղաղ։

## ԹԱՓՎԵՔ, ՓԱԹԻԼՆԵՐ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Թափվեք, փաթիլներ,
Փաթիլներ ճերմակ,
Առեք դաշտ ու լեռ
Ձեր թևերի տակ։
Ձյուն, երկա՜ր երկա՜ր
Ճամփադ ենք պահել,

Անվերջ, անդադար
Երկինք ենք նայել,
Որ ներքև սահենք
Լանջերով սարի,
Ձյուն, ուրախ ենք մենք,
Դե արի՜, արի՜...

## ԵՐԿՐՈՐԴ ԾՆՈՒՆԴԸ

Ա. ԿՐԱՍԻԼՇՉԻԿՈՎ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Թե օլիմպիական խաղերն ինչպես ծնունդ առան և ինչպես սկսվեցին, այդ դուք իմացաք «Պիոներ» ամսագրի 8-րդ համարից։ Հիմա էլ մենք ձեզ կպատմենք, թե արդեն մեր ժամանակներում ինչպես վերածնվեց հին Հունաստանի այդ սովորությունը։

Անցյալ դարի վերջին ֆրանսիական մանկավարժ Պիեր դը Կուբերտենը առաջարկեց օլիմպիական խաղեր կազմակերպել՝ դրանք դարձնելով համաշխարհային սպորտային տոն, որպեսզի մարդկության մեջ արթնանա «ազատության ոգի, խաղաղ մրցության և սպորտային վարպետության ոգի»։ Որոշվեց այդպիսի առաջին տոնը անցկացնել Հունաստանում, օլիմպիադաների հայրենիքում, և այդ տոնակատարությունը տեղի ունեցավ 1896 թվականին, Աթենքում։ Մեր ժամանակների այդ առաջին օլիմպիադայում ամենահետաքրքիր իրադարձությունը մրցության նոր տեսակն էր՝ մարաթոնյան վազքը։ Դրա ծագումը, ինչպես և օլիմպիական խաղերի ծագումը, կապված է Հելլադայի պատմության հետ։ Երկու հազար հինգ հարյուր տարի սրանից առաջ պարսկական Դարեհ թագավորն ուզում էր Հելլադան ստրկացնել։ Պարսկական վիթխարի բանակն ափ իջավ Աթենքից մոտ քառասուն կիլոմետր հեռու, Մարաթոն գյուղի մոտ։ Գտնելով, որ հարձակումը պաշտպանության ամենալավ միջոցն է, աթենացիք զորապետ Մելթիադեսի գլխավորությամբ Մարաթոնի հովիտն ուղարկեցին իրենց փոքրաթիվ զորքը։ Մի նեղ, դժվարանցանելի կիրճում դիրք գրավելով՝ այս զորքը փակեց Աթենքի ճանապարհը։ Պարսիկները առաջ շարժվեցին կռվի բռնվելու։ Հունական զորքերը թույլ տվին, որ նրանք մոտենան, ապա Մելթիադեսի հրամանով առաջ նետվեցին։ Մանկությունից ֆիզիկական վարժություններով մարզված լինելով՝ նրանք թշնամուց իրենց բաժանող տարածությունն ավելի արագ անցան, քան պարսիկները կարող էին նշան բռնել աղեղներից, և համարյա առանց կորուստ կրելու սրընթաց կռվի մեջ մտան։ Պարսիկները գրոհին չդիմանալով փախուստի դիմեցին։ Հաղթությունից անմիջապես հետո Մելթիադեսը սուրհանդակ ուղարկեց Աթենք։ Այդ սուրհանդակը երիտասարդ մարտիկ Դիոմիդոնն էր։ Մարաթոնի հովտից մինչև Աթենք ամբողջ ճանապարհը պատանին վազքով անցավ։ Վազեվազ հասնելով քաղաքի գլխավոր հրապարակը՝ նա հազիվ կարողացավ գոչել. «Ուրախացեք, մենք հաղթեցինք», — և անշնչացած ընկավ։

Եվ ահա, ի հիշատակ Դիոմիդոնի այդ սխրագործության, օլիմպիադայի ծրագրի մեջ մտցվեց նաև մարաթոնյան վազքը։ Զանազան երկրներից եկած քսանհինգ սպորտսմեններ Մարաթոն գյուղի մոտ ստարտի կանգնեցին, որպեսզի վազքով անցնեն նույն ճանապարհը, որով քսան-

հինգ դար իրենցից առաջ սլացել էր Մելթիադեսի արագավազ ռազմիկը: Ամբողջ ճանապարհին վազողներին ուղեկցում էին ձիավորներ ու հեծանվորդներ: Վազքն ավարտվում էր Աթենքում սարքված օլիմպիական ստադիոնում: Յոթանասունհինգ հազար մարդ ստադիոնում և մեծ թվով մարդիկ ստադիոնից դուրս, լարված հետևում էին այդ մրցությանը: Վերջապես թնդանոթի որոտն ազդարարեց, որ վազքի լիդերը մոտենում է ստադիոնին, և երբ բազմությունը տեսավ, որ առջևից վազում է հույն գյուղական պատանի Սպիրիդոն Լուիսը, ցնծությանը սահման չկար: Առանձնապես ուրախ էին հույները: Պատանին ազգային հերոս դարձավ:

Լուիսը 40 կիլոմետր 200 մետրը ճանապարհը վազել էր 2 ժամ 58 րոպե 50 վայրկյանում: Այդպիսի վազքը պահանջում է վիթխարի լարում, դիմացկունություն, ուժ և հատուկ մարզվածություն: Առաջին մարաթոնական մրցություններում մեջ հայտնի են դեպքեր, երբ չեն դիմացել նույնիսկ հիանալի նախապատրաստված սպորտսմենները:

Այդպես է պատահել իտալացի Դորանդո Պիետրիի հետ 1908 թվականին, չորրորդ օլիմպիական խաղերի ժամանակ, որոնք տեղի էին ունենում Լոնդոնում: Նա առաջինն էր, որ վազքով մտավ ստադիոն: Դատավորները պատրաստվում էին կանգնեցնելու իրենց վայրկյանաչափերը, իսկ ժողովուրդն արդեն Պիետրիին ողջունում էր որպես հաղթողի: Բայց հանկարծ իտալացին երերաց և ընկավ ճանապարհի վրա: Ստադիոնը քար կտրեց լարված լռությունից: Իտալացին դժվարությամբ վեր կացավ, էլի մի քանի անհաստատ քայլ արեց և նորից ընկավ: Մինչև ֆինիշ մնում էր ընդամենը հիսուն մետրը, բայց Պիետրին համարյա ուշաթափ էր եղել: Նա չիմացավ, թե ինչպես հանկարծ տրիբուններում անհանգիստ քրթմնջոց տարածվեց, չտեսավ, թե ինչպես մարաթոնյան դարբասով ներս վազեց ամերիկացի Հեյսը: Հաղթանակը փախչում էր Պիետրիի ձեռքից: Մի պոլոմեն և դատավորներից մեկը նրան կարեկցելով թևանցուկ արին և ֆինիշի գծով անցկացրին: Պիետրին դիստանցիան առաջինն անցավ, բայց այդ անօրինական օգնության համար հաղթանակը նրան չտրրվեց: Այնուամենայնիվ մի որոշ ժամանակից հետո Պիետրին ապացուցեց, որ ինքը աշխարհի ամենաուժեղ մարաթոնցին է, Մյուս մրցության ժամանակ նա բավական առաջ անցավ Հեյսից և առաջինը տեղ հասավ:

Մեր ժամանակներում դժբախտ դեպքերը կանխելու համար վազքի ամբողջ տարածության վրա սնման կետեր են սարքվում, և մարաթոնցիները հենց վազքի ժամանակ կարող են մի բաժակ գլյուկոզա խմել, որը պաշտպանում է սիրտը և նպաստում նրա լարված աշխատանքին:

Ամերիկյան Սենտ-Լուիս քաղաքում կազմակերպված երկրորդ օլիմպիական խաղերի ժամանակ քիչ մնաց հաղթանակը տրվեր մի խաբեբայի: Հանդիսատեսներն անհամբեր սպասում էին մարաթոնյան վազքի ֆինիշին: Երբ երևաց ամերիկացի Լորցը, ստադիոնը դղրդաց ծափահարություններից ու ողջույնի աղաղակներից: Ոչ ոք չգիտեր, որ Լորցն անազնիվ միջոցով է առաջ անցել իր մրցակիցներից: Գաղտնաբար ճանապարհից դուրս գալով՝ նա նստել էր իրեն սպասող մեքենան, դիստանցիայի կեսից ավելին նրանով անցել և



միայն ստադիոնից ոչ հեռու նորից սկսել էր իր վազքը։ Նրան ոսկե մեդալ տվին։ Քառորդ ժամ հետո վազելով եկավ իսկական հաղթողը՝ ամերիկացի Հիքսը, բայց հանդիսատեսները նրան բավական անտարբեր դիմավորեցին։ Միայն երեկոյան դեմ խաբեբան մերկացվեց։ Դատավորները նրան ապաորակավորեցին և մրցանակը տվին Հիքսին։

1920 թվականին Մարաթոն գյուղից մինչև Աթենք ընկած տարածությունը նորից և ավելի ճիշտ չափեցին։ Ստացվեց 42 կիլոմետր 195 մետր։ Այժմ մարաթոնյան վազքի բոլոր մրցությունները կատարվում են այդ նոր դիստանցիայով, բայց որում ոչ թե ստադիոնի վազքուղով, այլ՝ նրա սահմաններից դուրս։ Միայն ստարտը և ֆինիշը տեղի են ունենում ստադիոնում։ Բաղաքից դուրս ամբողջ ճանապարհի վրա սահմանվում են հսկիչ կետեր, իսկ վազողների հետևից դատավորներն են գնում մեքենաներով։ Քանի որ տարբեր տեղերում վազքի պայմանները տարբեր են (մի տեղ շատ վերելք է լինում, մի ուրիշ տեղ բոլորովին հարթ). ուստի մարաթոնյան վազքի համաշխարհային ռեկորդ չի արձանագրվում, այլ նշվում է, համաշխարհային նվաճում է համարվում այս կամ այն մարաթոնյան ցույց տված լավագույն ժամանակը։ Ներկայումս համաշխարհային նվաճումը պատկանում է անգլիացի սպորտսմեն Ջիմ Պետերսին։ Նա 42 կիլոմետր 195 մետր տարածությունը կարողացել է վազել բոլորից արագ՝ 2 ժամ 17 րոպե, 39,4 վայրկյանում։

Աշխարհում լավագույն մարաթոնցիներից մեկն է համարվում սովետական սպորտսմեն Իվան Ֆիլինը։ Երկու տարի առաջ Եվրոպայի առաջնության թեթև ատլետիկայի մրցություններում միայն մի պատահականություն խանգարեց նրան մարաթոնյան վազքի չեմպիոն դառնալ։ Ամբողջ տարածության վրա նա առաջինն էր։ Առաջինն էլ հասավ ստադիոն։ Բայց դատավորների անփութության պատճառով ուղիղ ժամանակին չէին նշագծել, և Ֆիլինը ճիշտ ուղղությամբ չըվազեց։ Իսկ երբ նա սխալը նկատեց, արդեն ուշ էր. ստադիոնում երևացել էր ֆինն Կարվոնենը և առաջինը հասավ ֆինիշին։ Ամբողջ գիշերը դատավորները խորհրդակցում էին և չգիտեին՝ ինչ անեն։ Վերջապես լուսադեմին որոշեցին չեմպիոն ճանաչել Կարվոնենին, որովհետև, այսպես թե այնպես, նա առաջինն էր կտրել ֆինիշի գիծը, իսկ ռուս սպորտսմեն Ֆիլինին, իսկական հաղթողին հանձնել ոսկե մեդալ, վրան փորագրված այն ժամանակը, որի ընթացքում նա վազել էր դիստանցիան։ Կարվոնենը հրապարակորեն հայտարարեց, որ ինքը իր հաղթանակը պատահականություն է համարում։

... Օրեցօր, ժամ առ ժամ մոտենում են տասնվեցերորդ օլիմպիական խաղերը։ Ինչպես միշտ՝ այս անգամ էլ ստարտում կշարվեն վազողները, որոնք պիտի անցնեն Դիմիտրիոսի անցած տարածությունը։ Կչխկա կրակոցը, և կսկսվի վազքը։ Դրան կմասնակցի նաև մեր Ֆիլինը։ Ցանկանք նրան հաղթանակ։



Թարգմ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.

# ՄԻՆՈՒՃԱՐ ԳԱՍՊԱՐԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



Նկ. Տ. ԹՈՒՄԱՋՅԱՆԻ

1

Նա տատիկի աչքի լույսն էր,
Եվ մայրիկի միակ հույսն էր,
Ագիզ-մագիզ ու մինուճար,
Մի Գասպար էր ու մի աշխարհ։

Ով Գասպարին գործի դներ,
Կբարկանար իսկույն տատը.
— Թող աշխարհը դառնա ավեր,
Փուշ չմտնի բալիս մատը։

Հենց վոր մի վատ բան էր անում
Ու նախատվում տղան համառ,
Վրա էին հասնում իսկույն
Տատն ու մայրը լեղապատառ.

— Հեռու կացեք, մի՛ք բարկանա,
Վա՜յ թե հանկարծ հիվանդանա...
— Վա՜յ, թուք ու մուր չտաք նրան,
Գետը կընկնի հանկարծ տղան...

2

Մինուճար էր, մի տան ճրագ,
Բայց ի՞նչ տղա՝ ցավ ու կրակ.
Քանի գնաց՝ ներես առավ,
Մարդկանց գլխին փորձանք դառավ։

Թռչունի պես անհոգ շրջում,
Մեծ ու փոքր չի ճանաչում.
Մի կաթիլ ջուր չի տա մեկին,
Թեկուզ հացը կանգնի բկին։

Էլ ինչ արհեստ ու ինչ ուսում.
Քարշ է գալիս անվերջ դրսում,
Միտ է որսում պատերի տակ,
Ճանճերի հետ անում կատակ։

Իսկ թե հարմար «գործ» չի գտնում,
Այգիներն է թաքուն մտնում,
Լիքը լցրած ծոց ու գրպան,
Ծռնում է նեղ՝ ձորի ճամփան...

Ինչ լա՜վ է, որ մենակ է նա,
Դե, ո՞վ նրան կընկերանա.
Միծաղում են մարդիկ վրան,
Զայրույթով են նայում նրան։




(Ճապոնական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Կար-չկար մի մարդ, որը ժայռից քարեր էր պոկում։ Նրա աշխատանքը շատ ծանր էր և նա դժգոհ էր։*

*Մի անգամ նա հառաչեց, քանի որ աշխատանքը ծանր էր, և բացագանչեց.*

*— Ա՜խ, էնքան հարուստ լինեի, որ հանգստանայի բամբուկե օթոցի վրա, կարմիր մետաքսե քողի տակ։*

*Հայտնվեց մի կախարդ ծերունի ու ասաց.*

*— Ինչ որ խնդրում ես, կստանաս։*

*Եվ նա հարստացավ ու պառկեց բամբուկե օթոցի վրա, կարմիր մետաքսե քողի տակ։*

*Մի օր թագավորն անցավ այդ կողմերով։ Ջիա-*



վորները սլանում էին նրա կառքի առջևից, իսկ դրանց մի մասը, որ կառքի հետևից էին գնում, ոսկե ամպհովանի էին պահել թագավորի գլխին: Երբ հարուստն այդ տեսավ, զայրացավ, թե ինչու իր գլխի վրա էլ ոսկե ամպհովանի չեն պահում, ու դժգոհեց: Հառաչեց ու ասաց.

— Կուզեի թագավոր լինել:

Հայտնվեց կախարդ ծերունին ու ասաց.

— Ինչ որ ուզում ես, կլինի:

Եվ նա դարձավ թագավոր: Նրա կառքի առջևով էլ շատ ձիավորներ էին գնում, և ձիավորներ կային նաև կառքի հետևում, և նրա գլխի վրա էլ ոսկե ամպհովանի էին պահում:



Փայլում էին արևի տաք շողերը և վառում հողն այնպես, որ խոտերը չորացան:

Թագավորը տրտնջաց, որ արևն այրում է իր երեսը և դժգոհեց այդ բանից:

Հառաչեց ու ասաց.

— Կուզեի արև լինել:

Հայտնվեց կախարդ ծերունին ու ասաց.

— Էնպես կլինի, ինչպես որ ուզում ես:

Նա դարձավ արև: Ուղարկում էր իր շողերը վերև ու ներքև, աջ ու ձախ և ամենուրեք: Նա այրեց երկրի խոտը և իշխանների դեմքերը, որ ապրում էին երկրի վրա:

Եվ ամպը կանգնեց նրա ու երկրի միջև: Արևի ճառագայթները անդրադառնում էին ամպից: Նա զայրացավ, որ իր իշխանության ճամփին դիմադրության հանդիպեց, տրտնջաց, որ ամպը ուժեղ է իրենից, և դժգոհ մնաց:

Ուզեց լինել ամպ, որն այդքան հզոր էր:

Հայտնվեց կախարդ ծերունին ու ասաց.

— Էնպես կլինի, ինչպես որ ասում ես:

Նա դարձավ ամպ, կանգնեց արևի ու երկրի միջև, ետ պահեց նրա շողերը, և՛ խոտը նորից կանաչեց:

Ամպը խոշոր կաթիլներով թափվեց երկրի վրա: Գետերը հորդացան, հեղեղը քշեց տարավ հոտերը: Ամպը իր առատ ջրերով ամայացրեց դաշտերը:

Ջուրը զարկեց ժայռին, բայց ժայռը տեղի չտվեց.



Ջուրը խշշաց ու աղմկեց մեծ հոսանքով, բայց ժայռը տեղի չտվեց:

Ամպը զայրացավ, որ իր ուժն անզոր էր և ժայռը չէր ուզում նահանջել: Նա դժգոհ բացագանչեց.



— Ժայռն ինձնից հզոր է, ուզում եմ ժայռ լինել:

Հայտնվեց կախարդ ծերունին ու ասաց:

— Կլինի էնպես, ինչպես որ ուզում ես:

Ամպը դարձավ ժայռ: Նա չէր շարժվում, երբ արևը շողում էր, երբ անձրև էր գալիս:



*Այն ժամանակ եկավ մարդը՝ քլունգն ուսին, սրածայր փորիչը և ծանր մուրճը ձեռքին, սկսեց ժայռից քարեր պոկել: Ժայռն ասաց.*

*— Այս ի՞նչ է, մարդն ինձ վրա իշխանություն ունի և իմ կրծքից քարե՞ր է պոկում...*

*Նա դժգոհ էր:*

*— Ես նրանից թույլ եմ. կուզեի մարդ լինել,— բացագանչեց նա:*

*Հայտնվեց կախարդ ծերունին ու ասաց.*

*— Ինչպես կլինի, ինչպես որ ասում ես:*

*Եվ նա կրկին դարձավ քարհատ. ծանր աշխատանքով քարեր էր պոկում ժայռից և գոհ էր:*

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

## ԻՆՉ ԱՍԱՑ ՕՃԱՌԸ





—Չեմ լվացվի, չեմ ու չեմ,—
Ասաց Կարոն, — ու՞ր փախչեմ...
Ձեռքից գցեց գնդակը,
Մտավ սեղանի տակը:
Հենց այդ պահին բարսի պես
Դուռը բացվեց՝ երկու կես.
Մի փեղկը՝ շը՜խկ — այս պատին,
Մյուսը՝ դը՜խկ — այն պատին...
Շեմքին կանգնեց օճառը՝
— Ասա ի՞նչն է պատճառը,
Որ փախչում ես դես ու դեն:
— Լա՜վ, գալիս եմ ես արդեն...
Չէ՞ր կարելի... ուշ մի քիչ...
Թնդաց օճառն.—Ի՞նչ, ի՞նչ, ի՞նչ...
Կեղտը մնա, վարակի,
Վիզդ մաշվի, բարակի՞...
Դե, շո՛ւտ արա, շտապի՛ր,
Այս կողմ, այն կողմ մի՛ ընկիր:
Ու երբ Կարոն տխրագին
Գնաց հասավ ծորակին,
Տեսավ՝ օճառն ամանում
Ոչ մի շարժում չի անում:
Բայց հենց տղան ձեռքն առավ,
Օճառն այնպես բարկացավ,
Որ փրփրեց, փրփրեց,
Քիթ ուական փորփրեց,
Փուչիկ դարձավ գույնզգույն.
Ջուրն էլ բշ՜շ-փշ՜շ...և իսկույն
Օճառ ու ջուր միասին
Մուրն ու փոշին քշեցին:
—Վա՜յ, այսքան կեղտ ո՞րտեղից...
Մայրի՛կ, արի, մի տես ինձ...





Երբ օճառը գործն արեց,
Քրտինք թափեց՝ ներարեց,
Տեղը պառկեց շատ հոգնած,
Քնեց մինչև լուսաբաց:



# ՔԱՋԱՐԱՆ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Խոժոռ ժայռերը սակայն այնքան էլ գոռ չեն, որ մարդն իրենց կողերը հղկել, լայնարձակ ուղիներ է բացել, որոնցով սլանում են մեքենաները: Կապուտջիղը, Յուղասարը, Փիրդոուդանի, Ողջիի, Վերին հանդի լեռները դարեր շարունակ այստեղ մենակ խոլական պար են բռնել:

Ահա Քաջարան ավանը: Դեպի երկինք ուղղված գորշ ամպափունջը՝ ծայրերին ծխնելույզներ, վարդագույն տուֆե բազմահարկ շենքեր:

Քաջարան... Իրոք միայն քաջ մարդիկ կարող են այս խստաշունչ տարերքի մեջ այսպես գեղեցիկ կերտել ավանը, պեղել լեռները և թանկագին գանձեր հանել: Այդ գյուղի պատմությունը սկսվում է հնուց: Հարյուրամյակների խորքից է գալիս Քաջարան անունը... Տասնչորս ազգության ներկայացուցիչներ են աշխատում այստեղ և բոլորն էլ այժմ քաջարանցիներ են: Մենք որոնում ենք նախկին քաջարանցիներին. ահա կոլտնտեսության նախագահ Հմայակ Պետրոսյանը, որ այժմ տրանսպորտի ճյուղն է ղեկավարում, հաշվապահ Լևոն Գևորգյանը ֆլոտացիոն ֆաբրիկայում նորմավորող է, իսկ մաճկալները, անասնապահները, հովիվները՝ հանքափորներ, շինարարներ, փականագործ—խառատներ, բուլդոզերավարներ են դարձել:

Ծովի մակերևույթից երկու հազար երկու հարյուր մետր բարձրության վրա են գտնվում Քաջարանի մոլիբդենի բաց հանքերը: Այստեղ իսկական շինարարական հրապարակ է. տասնյակ վիթխարի էքսկավատորներ, բուլդոզերներ ու հորատող մուրճեր են աշխատում, հարյուրավոր հզոր ավտոմեքենաներ դես ու դեն են շարժվում, էլեկտրաքարշերը վագոնիկների երկար շարքերով, օձագալար ընթացքով փակագծեր կամ զիգզագներ են գծում: Մեքենաների շառաչը, աղմուկը, շչակների ձայնը, ուժանակների պայթյունները մի անպատմելի ժխոր են ստեղծել:

Կար ժամանակ, որ՝ այս լեռը ավելի բարձր էր և ոչխարի հոտերն էին արածում նրա գագաթներին: Իսկ այժմ մեր մարդիկ լեռն իջեցրել են ավելի քան յոթանասուն մետր և շարունակում են իջեցնել: Վերևում, իր նախկին տեղում մնացել է միայն բաղնիքը, որը հանքի մարդկանց ասելով աշխարհի միակ, ամենաբարձր տեղում կառուցված բաղնիքն է:

Այստեղ իսկական քաջեր շատ կան: Ավարտելով ինստիտուտը, Լևոն Հակոբյանը սիրով եկավ Քաջարան և ահա երկրորդ տարին է, ինչ այստեղ է:

— Հպարտ եմ, — ասում է նա, — որ այս կոլեկտիվի անդամ եմ:

Երբ ցնդում են վառոդի հոտն ու փոշին, պայթյունների վայրում հանքաքարի վիթխարի զանգված է կուտակվում: Գործի են անցնում բուլդոզերները: Նրանք հանքաքարը մոտեցնում են էքսկավատորներին: Սրանք էլ լցնում են վագոնիկները: Այստեղ, այս բաց հանքում, ամբողջ աշխատանքները մեքենայացված են: Դա էլ հեշտացնում է գործը: Բուլդոզերը մոտեցավ հենց նոր փլուզված հանքաքարի մեծ զանգվածին և հրեց, զանգվածը տեղահան եղավ:

— Այ ո՜ւժ — շշնջաց մեկը՝ հայացքը բուլդոզերին ուղղած:

— Քա՜ջ է բուլդոզերավարը, — պատասխանեց մի ուրիշը:

— Իսկ ո՞վ է վարում մեքենան, — հարցրին նրան:

— Մի իսկական հերոս, անվանի բուլդոզերավար Հայկ Պողոսյանը, — եղավ պատասխանը:

Հայկ Պողոսյանը թիկնեղ երիտասարդ է, իսկական լեռնցի: Նա ձգում է ղեկավարման սլաքը, հնազանդեցնում հսկա մեքենան, այն հանձնում օգնականին, որը շարունակում է գործը վարպետից ոչ վատ:

Ֆլոտացիոն ֆաբրիկան տարածվել է Քաջարան և Ողջի ավանների միջև ընկած լեռնալանջին: Ընդամենը տասը տարի առաջ այստեղ արտեր էին, իսկ ավելի ցածում վարդենիներն էին բուրում: Այժմ դրանց տեղում վեր է խոյացել տուֆակերտ հսկան: Եթե ամբողջ հանքաքա-

րը ձուլվի, ահռելի ծախսեր կարվեն։ Դրա համար մինչև ձուլվելը «հարստացվում» է ֆլոտացիոն ֆաբրիկայում, այսինքն մետաղային մասնիկները անջատվում են, դատարկ ապարը լցվում է գետը, իսկ մետաղային մասնիկները միացվում, չորացվում են և որպես «հարստացված» կոնցենտրատ՝ ձուլվում։

Հարստացնող ֆաբրիկայի կամարների տակ հոնդում են մեքենաները. հանքաքար մշակում։ Ճոպանուղու միջոցով եկած հանքաքարը ֆաբրիկայի պահեստարաններից լցվում է փշրող բաժնի վերին մասը։ Հզոր մեքենաները, հեքիաթներում նկարագրված առասպելական վիշապների նման, իրենց երախներն են առնում հանքաքարի տոննանոց կտորները և մանրացնում։ Հետո հանքաքարի զանգվածները ժապավենների վրայով հոսում են, լցվում աղացների մեջ և ավելի մանրացվում։ Մանրացման, փոշիացման պրոցեսը շատ բարդ է, բազմաթիվ քիմիական նյութեր են բաց թողնվում աղացների մեջ։ մետաղե գլաններն ու գնդիկները այդ աղացներում փշրում, մանրացնում, փոշիացնում են հանքաքարը, որից հետո դարձյալ քիմիական նյութերի միջոցով ջոկվում են օգտակար հանածոները, ստացվում է կոնցենտրատը։

Մոտենում ենք հսկայական մի մեքենայի, որը բանեցնում է լեռնային ջրվեժ հիշեցնող գիսակներով մի աղջիկ՝ ավագ ֆլոտատոր Մարիամ Մուշկամբարյանը։ Ընդամենը երեք տարի առաջ, երբ ֆաբրիկա եկավ, աղջկա համար ամեն ինչ տարօրինակ էր։ Իսկ այժմ նա այս բարդ աշխատանքների ղեկավարն է, մասնագետ ինժեներից չի տարբերվում.

Մարիամ Մուշկամբարյանը մեքենաների մոտ է. ունկնդրում է վիթխարի աղացների ձայնին, ասես տեսնում է, թե նրանց ընդերքում ինչ է կատարվում։ Ինչպես անփորձ աչքը ջրաղացում չի նկատի, թե աղորիքի ալյուրը խոշոր է, կամ՝ մանր, այստեղ էլ դու չես կարող այդ նկատել։ Բայց նա, փորձառու ջրաղացպանի նման, իսկույն նկատում է, որ արդեն փոշիացված այս հանքաքարը խոշոր մասնիկներով է, մի բան, որ մետաղի կորստի պատճառ կդառնա։

— Պետք է աղացը կանգնեցնել և ջարդիչի պտուտակները սեղմել ներս, — Մարիամին են դիմում աղացի մոտ աշխատողները։

— Առանց կանգնեցնելու էլ այդ կարելի է անել, — պատասխանում է Մարիամը և ձեռքը քշտում, մեխանիկի հետ գործի է անցնում։

Շուտով կարգավորվեց ամեն ինչ։

Ինչքա՜ն շատ բան է արվում այնտեղ, ինչքա՜ն լավ մարդիկ են աշխատում մոլիբդենով և պղնձով հարուստ այդ լեռների ընդերքում։ Ի՜նչ թովչական ու հեքիաթային են Քաջարանի գիշերները, երբ աստղերը այնքան ցած են երևում, որ ասես հենց ձեռքդ մեկնես, բռնելու ես։ Հապա ձորերով խոխոջալով հոսող գետակները, Ողջի՜ն, նրանց ջրերում վտառներ կազմած կարմրախայտը...

Չէ, հեքիաթային են Քաջարանի գիշերները, կախարդող։





# Առաջին մետաքս

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

Մեղրու միջնակարգ դպրոցի նորակառույց շենքում գարնանը դպրոցականները շերամատուն էին կազմակերպել:

Այդ օրը հերթապահում էին Լիդան և Յավան:

— Ինչքան նայում եմ, այնքան հիանում եմ նրանց աշխատանքով,— ասաց Լիդան:— Յավա՛, տես, յուրաքանչյուր տերև ուտում են մինչև վերջ, կարծես ափսոսում են և չեն ուզում մնացորդ թողնել:

— Այո, ուտում են ոչ թե իրենց, այլ մեզ համար, չէ՞ որ նրանցից յուրաքանչյուրը մի բոժոժ է գործում, իսկ հետո էլ ամեն բոժոժից փաբրիկայում մինչև երկու կիլոմետր երկարություն ունեցող թել է ստացվում:

Նրանք չնկատեցին, թե ինչպես դուռը կամաց բացվեց, և շերամատուն մտավ երրորդ դասարանցի Համլիկը:

— Իսկ այդ թելից ինչ են գործում,— միամտորեն հարցրեց նա:

— Ա՛յ, օրինակ, քո պիոներական վզկապը բոժոժի մետաքսաթելից է,— պատասխանեց Լիդան:

— Բա այս կենդանիները անընդհատ տերև են ուտո՞ւմ, չեն հանգստանո՞ւմ:

— Անպայման հանգստանում են: Մինչև մետաքսաթել արտադրելը չորս-հինգ օրը մեկ անգամ «քնում են», հանգստանում, հետո արթնանում և նորից են սկսում ուտել, և այսպես 10 օր,— Համլիկին բացատրեց Լիդան և շուռ գալով դիմեց Յավան, ասաց,— շերամորդերին նոր, թարմ տերև տալու ժամանակն է:

Երկու ընկերուհիներն իսկույն շերամորդերի վրա փռեցին ծակոտիներով թղթեր, որոնց անցքերի միջով շերամորդերը ազատ կարող էին ել ու մուտ անել: Հետո այդ թղթերի վրա սկսեցին թթենու թարմ ճյուղեր փռել:

Համլիկը անթարթ նայում էր շերամորդերին, տեսնելու ինչ են անելու նրանք: Քիչ հետո նա զարմանքով տեսավ, թե ինչպես շերամորդերից մեկը ներքևից սկսեց բարձրանալ, գլուխը անցկացրեց թղթերի անցքի մեջ, կամաց-կամաց բարձրացավ թղթի վրա ու սկսեց թարմ տերև ուտել:

— Յավա, Լիդա, մեկը վեր բարձրացավ,— ուրախացած բացականչեց Համլիկը:

Աղջիկները ժպտացին: Կես ժամ չանցած բոլորը անցքերի միջով բարձրացան թարմ տերևների վրա, իսկ չոր ճյուղերը մնացին դատարկ:

— Տեսա՞ր, Համլիկ, թե ինչպես թարմ տերևները իրենց կողմը գրավեցին շերամորդերին: Այժմ չոր ճյուղերը հանելու ժամանակն է: Հենց որ մենք շերամորդերով ծանրաբեռնված թղթերը կբարձրացնենք, դու նրանց տակի չոր ճյուղերը հանիր:

Այդպես էլ արեցին: Նորից խաիրների վրա մնացին շերամորդերը՝ կորած թարմ տերևների մեջ:

— Յավա, իսկ շերամորդերը երբ կսկսեն բոժոժ գործել, ես այնքան կուզեի տեսնել նրանց աշխատանքը:

— Մի շաբաթից հետո, երբ սկսեն գործել, քեզ կասեմ:

Քիչ հետո թթենու տերևներով ծանրաբեռնված՝ շերամատուն մտան Արշավիրն ու Սպարտակը: Հաջորդ երկու ժամում նրանք պետք է հերթապահեին, դրա համար էլ ձոր էին գնացել տերև բերելու:

Եվ այսպես դպրոցականները այգիներից անընդհատ տերև էին բերում ու հերթով կերակրում շերամորդերին:

Վերջապես եկավ ցանկալի օրը:

Բոլոր պիոներները և դպրոցականները հավաքված, հիացմունքով դիտում էին շերամորդերի աշխատանքը: Նրանցից յուրաքանչյուրը սարդի ոստայնի պես շրջանաձև ցանցեր էր գործում ու աստիճանաբար այն խտացնելով՝ բոժոժի ձև տալիս, ապա մնալով բոժոժի մեջ՝ շարունակում էր այն գործել ներսից:

— Մեր բերքն այս տարի ավելի առատ է, երեխաներ,— ասաց դպրոցի ծնողական խորհրդի նախագահ Էլմիրա Թաչատրյանը:

— Ես էլ եմ ուզում շերամ պահել, հաջորդ գարնանը ինձ էլ հերթապահ կնշանակեք,— ասաց Համլիկը:

— Անպայման, Համլիկ,— ասաց Լիդան:

Որքա՜ն ուրախ էին երեխաները, որ նրանց աշխատանքն իզուր չանցավ, նրանք բոժոժի լավ բերք ստացան:

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՕԳՆԵՑ ՄԱՅՐԻԿԻՆ

Նկ. Մ. ԲԻՏՆՈՒ







## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

**«Պիոներ» ամսագրի 1957 թվականի բաժանորդագրությունը**

*12 ամիսը—24 ռ., 9 ամիսը—18 ռ.*

*6 ամիսը—12 ռ., 3 ամիսը—6 ռ.*

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**

**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. (գեղարվեստական խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса № 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06, 2—53—37 ՎՖ 07274, Պատվեր 1238, Տիրաժ 5000։ Տպագրական 4,1 մամուլ։ Ստորագրված է տպագրության 17/XI 1956 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի Մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Տերյան 91, Երևան։ Գինը 2 ռ.*



ՊԻՈՆԵՐ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Ցնծություն—Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ
Հոկտեմբերից առաջ — Մ. ՅՈԶԱՆՈՎԱ . . . 2
Անմոռանալի օրեր— Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ . . 4
Հոկտեմբեր— ՍԱՐՄԵՆ . . . . 6
Իմ լուսնին—Դ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ 6
Ամենաուժեղը— Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . . 7
Բանաստեղծություններ— Ս. ԽԱՐԱԶՅԱՆ . . . 10
„Z—W"—Կ. ՍԻՄՈՆՅԱՆ . . 11
Մերի ուղտը— Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . . 14
Փոքրիկ պատմվածքներ— Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ . 15
Խոսող քարեր— Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ . . 16
Այբոլիտ—Կ. ՉՈՒԿՈՎՍԿԻ . . . 20
Ձմեռնամուտ—Լ. ԴՈՒՐՅԱՆ . . 23
Երկրորդ ծնունդը—
Թափվե՛ք փաթիլներ— Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . 23
Ա. ԿՐԱՍԻԼՇՉԻԿՈՎ . 23
Միևնույն Դասպարը— Ս. ՄԿՐՏՉՅԱՆ . . . 26
Քառնասը (ներկիր)— . . . . 26
Ինչ ասաց օճառը— Վ. ՏԱԼՅԱՆ . . . . 28
Քաջարան— Գ. ԱՐԵՎՅԱՆ . . 29
Տերևից մետաքս— Գ. ԲԱԴԱԼՅԱՆ . . . 31
Թե ինչպես օգնեց մայրիկին .
Աշխարհագրական ճամփորդ— Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ
Ինչպիսի՞ն է արդյոք ձեր դիտողականությունը

Շապկի առաջին էջը՝
Նկ. Վ. ԽՈՐԵՆՅԱՆԻ

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԶԱՑՆՎՈՐԴ

(10 ՄԻԱՎՈՐ)



1. Լեռնագագաթ Ասիայում: 2. Քաղաք, որտեղ կյանքի մեծ մասը անց է կացրել հոլանդական հանճարեղ նկարիչ Ռեմբրանդտը: 3. Քաղաք, որտեղ 1956 թվականի նոյեմբերի 22-ից մինչև դեկտեմբերի 8-ը պետք է տեղի ունենան 16-րդ օլիմպիական խաղերը: 4. Միջերկրական ծովը թափվող գետ: 5. Ռ. Ամունդսենի հետ միաժամանակ Հարավային բևեռը հայտնաբերող: 6. Աշխարհի ամենաերկար լիճը: 7. Կյանքի մեծ մասը ջրում անցկացնող հսկա օձ՝ Հարավային Ամերիկայում: 8. Հարավային ցամաքի անվանումն իր կղզիների հետ մեկտեղ: 9. Քաղաք Հնդկաստանում, որտեղ գտնվում է հնդիկ ժողովրդի ճարտարապետության գլուխգործոցը՝ Թաջ Մահալ հուշարձան-տաճարը: 10. Սահարայի օազիսներում աճող բարեբեր ծառ: 11. Իրտիշի վտակ: 12. Ալպերի ամենաբարձր գագաթը: 13. Քաղաք-կուրորտ Ֆրանսիայում: 14. Գետ Ապենինյան թերակղզում: 15. Բուսականություն և ջուր ունեցող վայր անապատում: 16. Թերակղզի Աֆրիկայում: 17. Արաբական ծովը թափվող գետ: 18. Մոլորակ, որի տարին ունի [illegible] հազար օր 19. Արկտիկան ուսումնասիրող խոշոր բևեռագետ և անվանի ճանապարհորդ: 20. Անգլիայից կախում ունեցող պետություն: 21. Աֆրիկան ուսումնասիրող խոշոր ճանապարհորդ: 22. Մոլորակ: 23. Քաղաք Իտալիայում համանուն ծոցի ափին: 24. Քաղաք Ուկրաինայում: 25. Հրաբուխ, որի ժայթքման ժամանակ կործանվեց Պոմպեյը: 26. Նիագարայից բարձր, բայց ջրառատությամբ նրան զիջող ջրվեժ: 27. Գետ ՍՍՌՄ-ի հարավում: 28. Մեծ Զոնդյան կղզի: 29. Հանգած հրաբուխ Ասիայում: 30. Քամու տեսակ: 31. Քաղաք-նավահանգիստ Չինաստանում:

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

### ԻՆՉՊԻՍԻ՞Ն Է ՁԵՐ ԴԻՏՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒ՞ՆԸ

Հերթականությամբ գտեք 1-ից մինչև 60 թվերը:



















Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոցի 4-րդ դասարանի աշակերտ է Հայկ Վանանդյանը: Նա ֆուտբոլ շատ է սիրում: Սիրում է և՛ դիտել, և՛ խաղալ (ինչ թաքցնենք՝ երբեմն անգամ անկանոն), բայց ավելի շատ սիրում է նկարել: Նա շատ նկարներ է անում և ամենից շատ ֆուտբոլ է նկարում: